# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банака, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 6•89



Հանձնված է արտադրության 12. 04. 89 թ.։ Ստորագրված է տպագրության 7. 07. 89 թ.։ ՎՖ 02233։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 61382։ Պատվեր՝ 570։
Գինը՝ 15 կոպեկ։
Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 12. 04. 89 г. Подписано к печати 7. 07. 89 г. Формат 70×100 1/16. ВФ 02233. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61382. Заказ 580. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջին՝ ԳԵՎՈՐԳ ԳՐԻԳՈՐՅԱՆ (ՋՈՏՏՈ) «Նատյուրմորտ»

Բարեբախտություն է, որ Արամ, Ղազարոս, Ներսես Տեր-Գրիգորյանները կրթված, բազմակողմանի զարգացած մարդիկ են եղել և հավաստի ու արժեքավոր հուշագրություններ են թողել իրենց կրտսեր եղբոր՝ Վահան Տերյանի մասին: Հատկապես նրա մանկության շրջանի վերաբերյալ: Եվ քանի որ նրանք այժմ ողջ չեն, ես իմ հարցերի պատասխանները «ստանում» եմ նրանց հուշագրություններից՝ չփոխելով ոչ մի բառ ու նախադասություն:

**— Խնդրում եմ բնորոշեք մանուկ Վանիկին:**

**Ա. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ** — Հաստ, լիքը, գործ դեմքով, կարմրաթուշ, կլոր մի երեխա էր: Այդ հասակից կտեսնեիք նրան մի անկյունում, հատակի վրա նստած կամ պառկած եղունգներ էր կրծում... Հաճախ նա անտարբեր ու թմրած դրության մեջ մնում էր պասիվ ու առանց պահանջների, առանց լացի, որի պատճառով «անուշ»

# ՄԵՐ ՄԵԾԵ

## ՎԱՀԱՆ ՏԵՐՅԱՆ. ՎԵՐՀԻՇՈՒՄ ԵՆ

երեխի, «գառի» անուն վաստակեց շրջապատից: Մանկության հասակում արդեն սկսվեցին նրա մեջ նկատվել նաև բնավորության թունկումներ: Երեխայությունից շատ էր սիրում կարմիր շորը, և մինչև 7—8 տարեկան հասակը նրա շորերը կարմիր կտորից էին կարում:

**Ն. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ.**— Վահանը հաստլիկ ու կլոր էր, դրա համար էլ, համարյա միշտ, նրան սազում էր հագած շորը: Որովհետև շատ կենդանի և շարժուն երեխա էր, շատ շուտ էր մաշում մանավանդ շալվարի ծնկներն ու նստատեղը: Շատ սիրում էր գրպանները ծանրաբեռնել ամեն տեսակ իրերով, վեգ,



Վահանը Լազարյան ճեմարանում ուսանելու առաջին տարում:

Համառ էր հորս պես, երբ համոզված էր իր արարքի արդարացիության մեջ, ու լալկան՝ մորս պես, երբ կրում էր որևէ անարդարացի վիրավորանք:

Այդ վիրավորանքը, սակայն, նա չէր թողնի անպատասխան ու շատ անգամ կարտահայտեր որևէ սրամիտ ու տեղին գործարքով:

**— Ինչպե՞ս սկսվեց Վահանի գրանաչությունը, ուսումնառությունը:**

**Ա. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ.—** Վահանի կրթությունը սկսվեց ընտանիքի մեջ հորս անմիջական մասնակցությամբ: Վերջինս Գանձայի գյուղական պետական դպրոցի կրոնուսույցն էր: Մենք սովորում էինք գյուղական դպրոցում, իսկ Վահանը հաճախում էր այդ դպրոցը իբր սիրող, հասակի փոքրությունը խանգարում էր մտնել աշակերտների շարքը:

Վահանը, ինքն իրեն, առանց ուսուցչի, մեր մեջ շրջելով ու ապրելով սովորեց գրել-կարդալ:

Հինգ-վեց տարեկան հասակից Վահանը մտավ դպրոց:

1895 թ. օգոստոսին հայրս Վահանին տարավ Ախալքալաքի դպրոցը: Վահանը չկարողացավ հաշտվել Ախալքալաքին և հազիվ մինչև հունվար (1896 թ.) դիմացավ այնտեղ: Երբ հունվարի տոներին, որպես երկրորդ բաժանմունքի աշակերտ,

# ...ՐԻ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

## ԵՂԲԱՅՐՆԵՐԸ

գետի ափից հավաքած գունավոր քարեր, մեխեր, թելի կոճեր:

Որքան որ նորմալ ժամանակ բարեհամբույր ու զիջող էր Վահանը, այնքան անհնա ու անզուսպ էր բարկացած ժամանակ. ոչ մի զգուշություն, ոչ մի երկյուղ կամ վտանգ հաշվի չէր առնում:

**Ղ. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ (Ջավախեցի).—** Կազմվածքով լիքը, թմբլիկ ու կարմրաթուշ, բնավորությամբ մեղմ ու սակավախոս, մանկութ սիրում էր նա մենությունն ու իր «անուրջներով» տարվելը, դրա համար էլ մեծ մասամբ նրան կգտնեինք առանձնացած մի անկյունում, մտախոհ, եղունգները կրծելիս:

եկավ Գանձա, նա այլևս չուզեց վերադառնալ Ախալքալաք: Այսպես եզրափակեց Վահանը իր «ուսումը» Ախալքալաքի քաղաքային դպրոցում:

**Ն. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ.—** «Աղբյուրից» և մի քանի գրքերից է Վահանը առաջին անգամ գրականության հոտն առել, բայց մեծ մասամբ Նաշոյի[1] և ուրիշների կարդալով և մանավանդ հորս պատկերավոր պատմելով:

Ինքը՝ Վահանը պատկերներին միայն նայելով, արդեն պատմում էր գրքի ամբողջ բովանդակությունը:

Մեր տանից դպրոց գնացողը միայն

1. Նաշոն Վահանի ամենափոքր քույրն էր:

ես էի, իսկ Վանիկը միայն պոչ էր դառնում, գալիս դպրոց, որ տանը մենակ չմնա: Վահանի առաջին ուսուցիչը եղավ Խեչոյան Նիկողայոսը (թելացի, ինստիտուտավարտ):

Որն միջանկյալ պետք է նշել, որ Վահանը այնուհետև մի երկու ամիս սովորեց Ախալքալաքի քաղաքային դպրոցում, բայց այնտեղ տիրող կարգերից զզված, ձմեռվա կեսին, համբերությունը հատած ոտքով փախավ գյուղ և այլևս չվերադարձավ քաղաքային դպրոց:

Դ. **ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ**.— Վահանը դեռ բարուրում՝ հայրս դիմել էր Լազարյան ճեմարանի վարչությանն ու խնդրել, որ նրան գիշերօթիկ ընդունեն: Սակայն ամեն տարի հայրս իր հիշեցումներին չոր ու ցամաք պատասխաններ էր ստանում, թե՝ «դեռ վականսիա չկա», դեռ հերթը Վահանին չի հասել: Մինչդեռ Վահանը մեծանում էր: 9 տարեկան էր արդեն, Լազարյան ճեմարան կանչելու դեպքում հասակին համապատասխան քննություն պիտի տար, այնինչ Վահանը գրեթե ոչ մի բառ չգիտեր ռուսերեն:

Ուստի՝ հայրս, թեև համոզված, որ «մեծ քաղաքի փողոցներում մարդ ավելի շատ բան կսովորի, քան փոքր քաղաքի դպրոցներում», այնուամենայնիվ, իր տնտեսական դրությամբ հարկադրված, Վահանին ուղարկեց Ախալքալաք, որ գոնե «քիչ-միչ խոսել սովորի, տղի աչքը բացվի», մինչև Մոսկվա կանչեն:

Բայց Վահանը վեց ամիս էլ չմնաց Ախալքալաքում:

**— Հիշո՞ւմ եք, թե Վահանը ինչպես հրաժեշտ տվեց գյուղին և մեկնեց Թբիլիսի ու Մոսկվա:**

Ա. **ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ**.— Ամբողջ ամառն այս հարցը քննելուց ու կշռելուց հետո վերջապես հայրս հայտարարեց իր վճիռը. Վահանը պետք է գար մեզ հետ Թիֆլիս և, ինձ մոտ պատրաստվելով, գիմնազիայի քննություն տար:

Ես 17 տարեկան պատանի էի, չորրորդ դասարանի աշակերտ: Սկսվեցին Վահանին Թիֆլիս ուղարկելու պատրաստությունները: Օգոստոս ամսին էր. հայրս լծել տվեց սայլը, մայրս խուրջինը լցրեց պաշարով, և հայրս, ես ու Վահանը ճանապարհ ընկանք Ախալքալաք՝ մեր նոր թիֆլիսեցուն համապատասխան «հալավ» (հագուստ) կարելու:

... Մի քանի օր ես հայրական անմոռանալի օջախում մորս անվերջ արցունքներով համեմված մեր սիրելի տան հյուրասիրությունը վայելելուց հետո դուխաբորի ֆուրգոնով Ծալկայի և Մանգլիսի վրայով ճանապարհվեցինք Թիֆլիս:

Ն. **ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ**.— Եկավ բաժանման տխուր ժամը: Սայլը լծած, բարձած խոտով, անկողնով, խուրջինի մեջ բթնկոխ լցրած պաշարով: Հայրս ու Վահանը սայլի վրա նստած, իսկ մենք բոլորս ոտքով դուրս եկանք մինչև գյուղի ծայրը:

Մայրս ամեն տասը քայլից հետո արտասուքները թաքցնելու կամ խեղդելու նպատակով մոտենում էր քարքարոտ ճանապարհով գլորվող սայլին որևէ իր շըտկելու, կամ Վանիկին պապառով նստելու որևէ նոր հարմարություն ստեղծելու:

Վերջապես հնչեց հորս սորուկ ձայնը.— Հերիք է, դարձեք, դուք խո Մոսկվա գալու չե՞ք:

Սայլը կանգնեց, և մենք բոլորս մնաս բարով արինք Վանինին ու արտասուքներս խեղդելով, իրար հետ, բոլորովին փոխված ձայնով, իբր թե զրույց անելով դարձանք տուն:

Դ. **ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ**.— Ու սկսվեց ճանապարհի պատրաստությունը: Հայրս իր կիսատ-պռատ գործերն էր հանձնարարում ինձ: Մայրս Վանիկի շորերն էր լվանում, կարկատում, ճանապարհի համար խմորեղեն թխում:

Վանիկն էլ ուրախությունից թռչկոտելով իր «պատրաստությունն» էր տեսնում: Գրքերն առնեն հավաքել էր ու կապել կաշվե պայուսակում, ավելորդները նվիրել ընկերներին, վեգերը համրել, ցուցակ կազմել ու խնամքով թաղել խոտանոցի պատի տակ:

Մի առավոտ էլ դուխաբորի ֆուրգոնը կանգնեց դռանը, և Վանիկն ու Օնիկը[2], շորերը դարսելով, նստեցին, որ Մանգլիսով գնան Թիֆլիս, այնտեղից էլ Մոսկվա:

Դուռ ու դրկից, բարեկամ, ազգական հավաքվել էին «ջախճղան» Վանոյին ճանապարհ գցելու…

1 Դուխաբոր— ռուս աղանդավորներ, որ ապրում են Բոգդանովկայի շրջանում:

2. Հովհաննես Դուրգարյան (Օնիկ)—Գանձացի, որը նույնպես սովորել է Մոսկվայում, հետագայում Հայկական ԽՍՀ արդարադատության ժողկոմ:

**Հարցերը տվեց և պատասխանները ծաղկաքաղ արեց ՄՈԼԻԿ ՍԵԴՐԱԿՅԱՆԸ**



# Քարը

ԴՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ
Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Հայրս և ես սանձված էինք հսկայական քարի դեմ, որին եռսի նստեցր ծայր ա-նունը: Այդ քարը ատամում էր մեր այգու հենց կենտրոնում: Անկեղծ ասած նա իր տեղում նույնիսկ գեղեցիկ էր՝ փառահե-ղորեն բազմած մամռոտ գորգի վրա: Բայց դա հորս սրտով չէր. նա ուզում էր քարը հանել, տեղում ծառ տնկել: Ես ասացի՝ թող ծառը կողքին աճի, քարը մնա:

— Ո՛չ,— խոժոռվեց հայրս:— Քարը պիտի դուրս գա:

— Բայց չէ՞ որ դարերով այդտեղ է ե-ղել և շատ էլ սազում է իր տեղին: Ոչ ոք չի փորձել այն տեղահան անել,— փիլի-սոփայեցի ես:

— Մի ճառի,— ասաց հայրս:— Դարե-րի հետ գործ չունենս: Այս հողը հիմա մե-րն է, և քարը պետք է դուրս գա:

Ես հլու-հնազանդ գնացի բահը, լինգն ու քլունգը բերելու:

Հայրս պտտվում էր քարի շուրջը՝ մանրամասնորեն զննելով. երբեմն-երբեմն կռանում էր, նայում, շոշափում, ինչ-որ բաներ ասում ու նորից պտտվում:

— Ինչի՞ց սկսենք,— հարցրեցի ես՝ գոր ծիքները ցած դնելով:

— Նախ կողքերը փորենք,— մտախոհ ասաց հայրս,— որ ականջները երևան:

— Ի՞նչ,— չհավատացի ես,— ականջնե՞րը:

— Այո,— դարձավ իմ կողմը,— իսկ ի՞նչ կա որ: Հենց ականջները: Դու ա-

լավ ունե՞ս:

— Ունեմ:

— Դե, ուրեմն, քարն էլ ունի:

— Բայց...

— Բոլորը ճառում ես:

Փորեցինք քարի չորս կողմերը, երբեմն դուրս ռանելով գրպաչատ քարեր: Հայրս դժգոհ էր ինձնից: Չէր խոսում, բայց ա-մեն ինչից երևում էր, որ դժգոհ է: Ես չէի ճանաչում քարը, չգիտեի նրա բնույ-թը: Իսկ քարը հորս հին ծանոթն էր: Ե-րեխա տարուց նրանք չափվել են իրար հետ: Բայց էլի մնում են ու մնում շուռ տրվելիք քարեր, որոնք պահանջում են ուժ ու համառություն: Եվ ահա ինքը ծերացել է, իսկ իր զավակը չի բռնում տեղը: Սա էր հիմնական դժգոհության պատճառը:

Երբ քարի չորս բոլորը շրջանաձև փորել էինք, հայրս լինգը հարմարեցրեց ընդերքից հայտնված մի ելուստի, որը հավանաբար քարի ականջն էր, ու հրամայեց լինգի տակ մի քար գլորեմ:

— Չեղավ,— ասաց,— մի ուրիշը, ավելի մեծը, որ ուժ տալուց չթաղվի հողի մեջ:

Ես կատարեցի հրամանը՝ շտապելուց քերծելով ձեռքս:

— Լավ է,— գոչեց հայրս,— հիմա ձեռքիդ պատրաստ պահիր բարակ խճեր, որ հենց շարժեմ, դնես արանքը:

Խիճ, բարակ խիճ.. Որտեղի՞ց ճարեմ: Որը վերցրեցի՝ հորս սրտով չէր:

— Ձեղավ, բարակը բեր, ափիս պես մի քար գտիր, շուտ:

Նա արդեն սեղմել էր լինգը, քարը մազաչափ շարժել էր: Ի վերջո գտա հարմար մի բան, դրեցի անցքի մեջ: Հորս դեմքը լարումից կրակ էր կտրել: Նա լինգը զգուշությամբ դուրս հանեց ու նորից պտտվեց քարի շուրջը: :

— Հիմա գտնենք մյուս ականջը,— ասաց նա:

Երկրորդ ականջը, պարզվեց, առաջինից երկու թզաչափ այն կողմ էր, մի սոթլիկ ելուստ էր, որին լինգը ոչ մի կերպ չէր հարմարվում: Հայրս փորձում էր նորից ու նորից, քանդում էր քլունգով, հողը հեռացնում: Մեր հանած քարերից մեկը հարմարեցրեց լինգի տակ ու... լինգը բռնեց ականջից: Սկսեց սեղմել: Հորս դեմքից արյուն էր կաթում: Աչքերը կիսախուփ էին: Նրա ողջ ուժը ուսերից, ծնկներից հավաքվել, լցվել էր լինգի մեջ, որի միջով հոսում էր դեպի քարը:

— Բարակ քար բեր,— տնքաց հայրս:

Ես ման էի գալիս, տենդագին փնտրում խոտերի ու թփերի մեջ, չէի գտնում այդ գրողի տարած բարակ քարը: Պատահածը հաստ էր, քիչ համարներր պարզում էի, հորս չորացած շրթունքները ասում էին՝ չէ...

Ի վերջո նա թողեց լինգը, քարը ծանրորեն կրկին նստեց իր տեղը: Ծաղված հայացքով ման եկավ դեսուդեն, գտավ մի քանի հարմար տաշեղ, բերեց-լցրեց առաջս:

— Սրանք են,— ասաց,— վերցրու, այ էս սևը, բարակ կողմով կդնես քարի տակ: Տես, ձեռքդ չվնասես:

Ու նորից կպավ լինգին: Քարը ասես բարձրանում էր երկրի խորքերից:

Հորս ամեհի ուժի դեմ հազիվ էր այն մի մատնաչափ շարժվել, երբ ես ճարպկորեն ճեղքի մեջ հրեցի սև, բարակ որձաքարը: Ժայռը նստեց բարակ քարին՝ ճզմելու չափ սեղմելով այն:

— Այո,— ծոր տվեց հայրս, չգիտեմ՝ ինչին ի պատասխան, և լինգը զգուշորեն ցած դրեց, ասես ապակուց լիներ, կփշրվեր, եթե շպրտեր:

Ու նորից պտտվեց քարի շուրջը, տընտղեց, շոշափեց վերև-ներքևը:

— Չէ,— ասաց,— պիտի երրորդ ականջից էլ բարձրացնենք:

— Ուրեմն քարը երե՞ք ականջ ունի,— հարցրի ես:

Հայրս նայեց ինձ քիչ խաղաղված հայացքով: Դա նշանակում էր՝ գործերը լավ են:

— Քար կա՝ մի ականջ ունի, քար կա՝ տասը, քար էլ կա՝ հարյուր...

Մեր բաժին ընկած քարը, պարզվեց, ուներ չորս ականջ: Մյուս երկու ականջներն էլ ոլորելուց հետո, քարը, կարելի է ասել, կողամասերից անջատվել էր և նըստել մեր դրած բարակ քարերի վրա:

— Քարը ծնկած էր,— ասաց հայրս՝ ծխախոտ վառելով,— լավ է, որ փորի վրա պառկած չէր կամ մեջքի վրա: Ծընկած քարը, մեկ էլ գլխի վրա կանգնած քարը հեշտ է տեղահան անել: Հիմա ես քթի կողմից կխաղացնեմ, կսկսի պարել: Ամեն ճախրի հետ դու մի քար կդնես, ու շուռ կտանք գլխի վրա: Բայց պիտի այնպես անենք, որ հանկարծ մեջքի կամ փորի վրա շուռ չգա, շատ դժվար կլինի մեր բանը: Հասկացա՞ր:

Ծխախոտը գցեց մի կողմ ու գնաց դեպի քարը՝ քիչ կռացած, լինգը՝ հրացանի պես պատրաստ կրակելու: Դիմացն ասես ոչ թե քար էր, այլ գազան: Հայրս լինգը դրեց քարի ականջներից մեկի տակ՝ գնցեց: Բան դուրս չեկավ: Մի շըրջան էլ կատարեց հուշիկ, մանրաքայլ: Կանգ առավ մյուս ականջի մոտ, լինգը հարմարեցրեց ելուստին ու սկսեց գերլարումով սեղմել: Քարը ցնցվում էր, դա նըրա պարն էր. կոշտ ու կոպիտ պար էր, որի շարժմանը ներդաշնակ վերուվարում էր հորս մարմինը:

Ես խճեր էի գցում քարի տակ, որոնց հենվելով, մերթ ծնկելով, մերթ շորորալով, գրեթե աննշան առաջանում էր:

Պրկումից հորս կոշիկները թաղվել էին խոնավ հողի մեջ: Քարն այնքան ամուր էր մեխվել հողում, ասես աճել էր հենց այդ տեղից և այլևս չէր կարողանա քայլ գցել հեռանալ...

Ոչ մեկը չէր անցնում այդ կողմերով, որ ձեռ գցեր, օգներ:

— Գոնե մեկնումեկը գար,—ասացի ես:

— Հույսդ ուրիշի վրա մի դիր,— պատասխանեց հայրս:

— Բայց վատ չէր լինի, որ մեկնումեկը գար, թեկուզ երեխա,— պնդեցի ես:

— Է՜, է,— հառաչեց հայրս:

Նրա դեմքից քրտինքը հոսում էր, գըլոր-գլոր թափվում գետին: Ես էլ էի կախվել լինգից, չիմանալով՝ որքան եմ օգնում հորս: Աչքս ծլլացող քրտինքին էր: «Մի՞թե սա է արդար քրտինքը,— մտածեցի ես,— որի մասին այնքան շատ գրում են

ու խոսում: Բայց շատ դառն է այս քըր-
տինքը և տանջալի»:
Քարը տեղի էր տալիս, զգալիորեն կը-
տըրվել էր գետնից ու ասես պատրաստ-
վում էր ճամփա ընկնելու դեպի այգու
եզրը:
— Թող,— գոչեց հայրս,— լինգը թող,
մի հաստոտ քար գցի տակը:
Ես սկսեցի մոլեգնորեն փնտրել հաս-
տոտ քար: Չէի գտնում, քիչ առաջ, որ
մենակ դրանք էին շուրջբոլորը, հիմա ա-
սես գետնի տակն անցան:
— Ոտքերիդ դեմն է, վերցրու,— տըն-
քաց հայրս:
Ձայնը խուլ էր, ասես քարի տակից էր
գալիս:
Ցույց տված քարը հապճեպ հրեցի լին-
գի տակ:
— Չեղավ,— նորից տնքաց հորս ձայ-
նը,— հրի քթի տակ, քարի քթի տակ:
Ո՞րն էր քիթը: Ես մի պահ կարկամեցի:
— Այստեղ, այստեղ,— հայրս հայաց-
քով ցույց տվեց գետնից պոկված քարի
հսկա զոգավորությունը, որը ավելի շուտ
փորի էր նման, քան քթի:
Երբ քարը հաջողությամբ շուռ էինք
տվել ու հայրս ծխախոտ էր վառում, բա-
ցատրեց.
— Հիմի արդեն սա քարի քիթը չէ,
դարձավ մեջք, մեջքը դարձավ փոր: Նա-
յած քարը ինչ դիրք ունի, ըստ այդմ պի-
տի որոշես նրա մասերը...
Իրիկվա դեմ քարն արդեն դուրս էր ե-
կել իր ամեհի փոսից: Աողեն մարգա-
գետնով նրան քշելը դժվար բան չէր: Երբ
քարը մոտեցրել էինք արտի եզրին, երևա-
ցին երկու տղամարդիկ: Հորս հասակա-
կիցներ էին, առանց խնդրելու մոտեցան,
օգնեցին: Քիչ էր մնում ասեի՝ ի՞նչ կլի-
ներ, որ շուտ գայիք, այսքան չտանջ-
վեինք: Բայց եղածը եղած էր: Քարը գը-
նաց հանգրվանեց այգու եզրին: Նրա
նոր տեղը անսովոր էր աչքիս, ինչ-որ
անբնական բան կար նրա ցից դիրքի
մեջ, անբնական էր նաև հսկայական խոր-
շը... Երբ տուն էինք վերադառնում ու
մութը ընկնում էր, ես մտածեցի մտավոր-
րապես այսպիսի բան. կանգնի ինչ-որ
ժամանակ, և այս քարը կսկսի սազել իր
տեղին, իսկ խորշն էլ կլցվի, կվերանա:
Եվ այնժամ ով էլ որ նայի այս քարին,
իրեն կթվա, թե այն իր տեղում է եղել
հավիտյան, և այն տեղաշարժելու համար
երբևէ չի տառապել ոչ ոք...

СОՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

# Ես հայ եմ

Նախնիքս՝ փառապանծ, քաջազուն,
Անցել եմ երկար ճանապարհ,
Հին են իմ երգերը, իմ լեզուն,
Եղել եմ վարպետ շինարար:

Թռչնի պես՝ իմ բույնը ավեր,
Շրջել եմ աշխարհից աշխարհ,
Հայաստանն է ինձ հավատ տվել
Ու տուն է կանչել մայրաբար:
Երգս դարավոր,
Միտքս թևավոր՝
Ես հայ եմ,
Մենք հայ ենք
Զորավոր:

Սաղավարտն եմ կրում Վարդանի,
Քաջ Դավթի սուրն է իմ ձեռքին,
Անդրանիկն ու Բաղրամյանն են
կոփել
Իմ կամքը, անկոտրում իմ ոգին:

Իմ տունը հավերժ է, միշտ
կանգուն,
Ուզում եմ ապրել ես խաղաղ,
Ապրիր դու, Հայաստան, իմ
ծաղկուն,
Հայրենի իմ տուն, իմ օջախ:

Երգս դարավոր,
Միտքս թևավոր,
Ես հայ եմ,
Մենք հայ ենք
Զորավոր:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ՊԱՐԶ ԼԻՃ

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Առաջին անգամ Պարզ լիճը տեսնելու եմ գնացել սրանից մի քանի տարի առաջ: Դեռ լճին չէինք հասել, որ տեղատարափ անձրև բռնեց, մի անձրև՜: Ստիպված ավտոբուսը կանգնեց: Վարորդը ճանապարհը չէր տեսնում: Ապակիների վրայով ասես ջրահոս թանձր վարագույրներ էին սահում ցած: Երկինք-գետին ջուր էր ու ջրի շաչյուն: Դա եղել է իմ տեսած

ամենահորդառատ անձրևն էր: Դրա համար էլ, երկու տասնամյակ անց, ես այդ օրը հիշում եմ այսօրվա նման: Բարեբախտաբար անձրևը կարճ տևեց. պատկերացնո՞ւմ եք, նույնիսկ արև դուրս եկավ, և մենք ճամփան շարունակեցինք:

Երկու կողմից մեզ ուղեկցում էին լվացված, արևից փայլող անտառն ու անձրևից դեռ ուշքի չեկած երգեցիկներն ու ծաղիկների բույլերը: Ճամփեզրի թփուտներից քանի՜ հազար ջրե ուլունք էր կախված:

Ահա այդպես ականատեսը լինելով բնության շռայլ դրսևորումների, մենք գնացինք ու կանգ առանք Պարզ լճի ափին:

Բնության այդ գողտրիկ անկյան առաջին տպավորությունը՝ մեր դիմաց փռված էր սքանչելի մի նկար, աշխարհի ամենաթարմ գույներով՝ կանաչով ու կապույտով նկարված:

Ափամերձ ծառերի անդրադարձը ի՜նչ գեղեցիկ էր ջրի հայելում: Եվ ի՜նչ խաղաղ, ինչ հանգստավետ տեսարան էր այդ: Տղան ու նավակը, որ համարյա հասել էին լճի կենտրոնին, գունագեղ պատկերի մասն էին կազմում: Հենց այստեղ, ջրում ցոլացող գլխիվայր ծառերի նկարեն ուրվագիծը դիտելիս, ես մտածում էի՝ անդորր բառը ճիշտ և ճիշտ այս լճի համար է ստեղծված: Իսկ անունը՝ ինչպես է կպել ու պոկ չի գալիս. Պարզ լիճ. զուլալ ու թափանցիկ:

Գիտե՞ք, չէ, կապույտ գույնը և թափանցիկությունը մաքուր ջրերի մենաշնորհն են:

Հազվադեպ են լինում պահեր, երբ մարդ վերանում է աշխարհի հոգսերից ու ցավերից, մոռանում ամեն ինչ ու ենթարկվում բնության հմայքներին: Պետք է խոստովանել՝ բոլորս գերված էինք լճի գեղեցկությամբ:

Քսան տարի է անցել: Հիմա դարձյալ Պարզ լճի ափին եմ: Սակայն ինչքան տարբեր են իմ մտորումները:

Մենք շատ ենք լսել՝ մաքուր ու գեղեցիկ բնությունը, թարմ օդը բուժում են մարդու նյարդերը, ամրապնդում ու կայտառացնում օրգանիզմը: Բայց արդյոք մի՞շտ ենք մեզ հաշիվ տալիս, որ հենց մեզնից՝ յուրաքանչյուրիցս է կախված բնության անխաթար գոյությունը: Իմ ձեռքին է փոքրիկ մի գրքույկ. «Հայկական ԽՍՀ գետերն ու լճերը» վերնագրով: Հեղինակը, աշխարհագրագետ Կիրակոս Օհանյանը, 1961 թվականին գրել է.

«Պարզ լիճը գտնվում է Դիլիջանից ոչ շատ հեռու, Աղստևի հովտում և բնության հրաշալիքներից մեկն է: Բնությունը շռայլել է նրան զարմանալի գեղեցկություն: Լիճը շրջապատված է խիտ անտառային բուսականությամբ: Ունի մաքուր, վճիտ ջուր: Նրանից սկիզբ են առնում փոքրիկ առվակներ, որոնցով լճի ջրերը հոսում են դեպի Աղստև գետը»:

Ուշադրություն դարձրեք՝ «ունի մաքուր, վճիտ ջուր», այսինքն այն, ինչ տեսել է աշխարհագրագետը 28 տարի առաջ: Ինչ տեսել էի ես՝ քսան տարի առաջ: Հիմա ինչքան պետք է վշտանար աշխարհագրագետը, եթե ողջ լիներ ու տեսներ Պարզ լճի պղտորությունը:

Երկու, երեք տասնամյակը, որ դարերի հոլովքում ակնթարթ էլ չեն, պարզվում է, շատ մեծ ժամանակահատված են բնությունը պահպանելու կամ ավերելու համար: Բայց չէ՞ որ լիճը դարերի ու հազարամյակների կյանք ունի: Նրա ամբողջականությունը, բուսական ու կենդանական աշխարհը շրջապատից անջատված, մեկուսացած մի երևույթ չեն: Լճերը, փոքր թե մեծ, բազում թելերով կապված են նրանց գրկող լեռների ու անտառների, նրանցից սնվող գետերի, նրանց ափերին հանգստացող մարդկանց հետ:

Լիճը, լճակները, գետերն ու անտառը օդի ու ջրի մեծ կարգավորիչներն են, որոնցից և կախված է մարդու բարեկեցությունը: Տարեցտարի լճի մոտակայքում կառուցվող հանգստյան տները, զբոսաշրջիկների այցելությունները, սեփական ավտոմեքենաների մեծ թիվը բանուկ են դարձրել Պարզ լիճ տանող ճանապարհը: Եվ ինչ. ստացվում է, որ բնությունից հաճույք ստանալու դիմաց, մարդիկ դանդաղ, աննկատ, սպանում են բնությունը:

Իմ պատանի բարեկամնե՛ր. մեր կյանքում այնքան շատ բան է փոխվել: Հիմա մենք շատ-շատ երևույթների, քան երբևէ, նայում ենք բաց հայացքով, ուղիներ փնտրում դուրս գալու դժվար վիճակներից: Ես ձեզ հետ խոսում եմ իբրև հավասարը հավասարի, քանի որ վստահ եմ՝ դուք լավ եք հասկանում, թե ժողովրդի համար ինչ մեծ արժեքներ են հայրենի հողը, գետերն ու լճերը, անտառները, հանքային հանածոները... Բնությունն ընդհանրապես: Դրանք, բոլորը, թանկագին, անգնահատելի գանձեր են, և դրանց շարքում իր գրավչությամբ առանձնա-

հատուկ տեղ ունի մեր Պարզ լճակը։

Բայց ահա նրա ջուրը պղտոր է։ Ո՞ւր է աքանչելի կապույտը, ո՞ւր է թափանցիկությունը։ Պարզ լիճը դեղնականաչավուն երանգ է ստացել։ Իսկ դա նշանակում է, որ հատակում անբարենպաստ պայմաններ են։ Շերտ առ շերտ հատակում նստվածք են տվել անփութորեն լիճը նետված թղթի կտորտանքը, դատարկ շշերը, ծխախոտի ու ուտելիքի մնացորդները։ Եթե դրան միացնենք լճի մոտակա անտառում խնջույքներից հետո թողած տգեղ հետքերի առկայությունը... Իմացե՛ք, ամեն մի հորդառատ անձրևից հետո, բոլոր կողմերից առվակներով դեպի լիճն են հոսում ծառերի տակ մնացած աղտեղությունները, անթույլատրելի մի շերտ ևս ավելացնելով հատակում և Պարզ լճի պարզությանը մի հարված ևս տալով։

Լավ. եկեք այս տխուր իրողությունը մի պահ մոռանանք, քանի որ լճափին կանգնած նավակով պետք է զբոսնենք մինչև հանդիպակաց ափը։

Անդորր. նույնիսկ այն պահերին, երբ նավավարը շարժում է թիակներն ու ճողփում է ջուրը, մի խաղաղ լռություն է պարուրում հոգիդ, և նկատում ես, և գնահատում նավակից դեպի ափը վազող մանրիկ ալյակների անկրկնելի գեղեցկությունը։

Թիավարեցինք մինչև հանդիպակաց ափը, և այնտեղ տեսա մի բան, որ կյանքումս առաջին անգամ էի տեսնում։ Լճի մեջ ծառեր կային։ Բայց դա՛ չէր զարմանալին։ Ջուրը, չէ՞ որ, խփվելով ափերին, մաշում, քայքայում է մերձակա փուխր հողաշերտերը և իր տարածքի մեջ ներառնում հաստաբեստ ծառերը։ Պատկերացնո՞ւմ եք, մինչև «գոտկատեղը» ջրի մեջ կանգնած դարավոր ծառեր կային, որը՝ կանաչ, որը՝ չորացած։ Եվ հենց այդ չորացած ծառերն էին, որ շատ էին նման գույնզգույն խաղալիքներով զարդարված տոնածառերի։ Երբ բավականաչափ մոտեցանք, տեսանք, որ ճյուղերից կապված են թաշկինակներ, ժապավեններ ու ըզգեստների խայտաբղետ ծվեններ, ճիշտ այնպես, ինչպես բազմիցս տեսել էի խաչքարերի, մատուռների և աղբյուրների մոտ բուսած մասրենիների կամ այլ ծառերի ճյուղերին։

Հին, շատ հին սովորույթ է այդ։ Դեռ հազարամյակներ առաջ, հեթանոսական ժամանակներում, մարդիկ երկրպագել են ջրին և նրա ակունքների մոտ զոհեր մատուցել։ Երաշտի տարիներին մարդիկ լեռներում հսկայական քարաբեկորներից վիշապաձկներ են կերտել, աղբյուրների ակունքների մոտ բուսած ծառերին իրենց զգեստներից փրցրած ծվեններ կապել՝ անձրևի ակնկալությամբ։ Դարեդար ջրի պաշտամունքը եկել հասել է մեզ։

Հայկական դիցաբանությունից մեզ հայտնի է, որ վիշապաձկների քարարձանները ձոնված են պտղաբերության աստվածուհուն՝ Աստղիկին։ Բազում աղբյուրներից գիտենք նաև՝ Ծովինարն էլ է հորդառատ անձրևների, ծովի, բուժիչ ջրերի ու աղբյուրների աստվածուհի համարվել։ Այսօր Պարզ լճի ջրերում կանգնած ծառերը ինչ-որ ժամանակ ափամերձ աղբյուրներից մեկի ակունքին են մոտ եղել։ Չէ որ բարձրադիր վայրերի լճերը մեծ մասամբ սնվում են հատակի և շրջակայքի աղբյուրներից։

Ինչ խոսք, ժամանակի ընթացքում շատ բան է փոխվել, շատ բան մոռացվել, բայց հնուց եկած սովորույթը՝ Ծովինարի պաշտամունքը, սերնդեսերունդ փոխանցվելով, եկել հասել է մեզ։

Մարդիկ գալիս են այստեղ իրենց իղձերի, իրենց փայփայած զգացումների կատարումն երազելով։ Շատերը նույնիսկ խոսում են ծառի հետ, ասելով՝ տխրությունները թող ջրում մնան, իսկ ուրախությունները մեզ հետ տուն տանենք։

Լսո՞ւմ եք, իմ պատանի բարեկամներ, ժողովուրդը իր հոգևոր գանձերը, էպոսը, դիցաբանությունը, հավատալիքները ինչպես է սերնդից սերունդ փոխանցում։

Այո, շատ բաներ գալիս են հնից։ Այդ մե՛նք ենք, որ ամեն ինչ չգիտենք և աստիճանաբար իմանալով հարստացնում ենք մեր միտքը, մեր զգացումները։ Սովորելով, գիտելիքների պաշար հավաքելով մենք հասկանում ենք, որ հնոց խոսքը և հավատալիքները հիշվելու, պահպանվելու կարիք են զգում։ Եվ հենց մեր Պարզ լիճն էլ, որ հազարամյակների տարիք ունի, նույնպես մեր խնամքի ու գուրգուրանքի կարիքն ունի։

Նավակով դեպի ափ վերադառնալիս ահա այս մասին էի մտածում, որ նկատեցի ջրից քիթն հանած օղու շիշը։ Հենց այդ էլ ինձ դրդեց գրել այս հոդվածը՝ ի պաշտպանություն մեր փոքր լճերի ու լճակների, առուների, գետակների ու գետերի։ Եվ առաջին հերթին՝ մեր Պարզ լճակի։

ՎԻՏԵՍԶՍԼԱՎ ՆԵԶՎԱԼ

(Չեխոսլովակիա) (1900—1958 թթ.)

## Սվրատկայի ափին գինարբուկն է ծաղկում․․․

Սվրատկայի ափին գինարբուկն է ծաղկում,
Սվրատկայի ափին խոտերը նվազ են խիստ:
Ես՛ այստեղ լողացել եմ, երազել եմ արթուն:
Սվրատկայի ափին գինարբուկն է ծաղկում,
Իսկ ջուրն այնպես պղտոր է թփուտներում բոշխի:

Գուցե կան աշխարհում շատ ավելի մեծ գետեր,
Քան Սվրատկա գետակը տրտում ափերով:
Ես այստեղ անցրել եմ այնքան շատ օրեր,
Գուցե կան աշխարհում շատ ավելի մեծ գետեր,
Բայց մայրս չի իջել այնտեղ բոբիկ ոտներով:

Գուցե կան աշխարհում վայրեր, ուր ջրերը հստակ
Արտացոլում են սարի կանաչը, երկնի կապույտն աղու,
Իսկ դու, հայրենի Մորավա, միակ իմ, միակ,
Գուցե կան աշխարհում վայրեր, ուր ջրերն են հստակ,
Իսկ հայրենիքն իմ Մորավան է, ուր չեմ եղել վաղուց:

Սվրատկայի ափին ծաղկում է գինարբուկը,
Եգիպտացորենի կողրերը հյութով են լցվում անտես:
Մայրիկ, ինչպե՞ս ետ բերեմ անցած տարիների բույրը…
Սվրատկայի ափին ծաղկում է գինարբուկը:
Ո՞վ խզեց, ինչո՞ւ խզեց կապերը այսպես…

Գուցե կան աշխարհում շատ ավելի մեծ գետեր,
Քան Սվրատկա գետակը, նրա տրտում ափերը,
Մայրիկ, մինչև օրերիս վերջը կուզեի այստեղ ապրել,
Գուցե կան աշխարհում շատ ավելի մեծ գետեր,
Լոկ այստեղ ես դու, հայրենիք, և անանց քո սերը:

Թարգմանեց՝ ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆԸ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ

# Արշակ Երկրորդը Հայոց գահին

Խոսրով Կոտակի, Տիրանի և Արշակ II-ի մասին մանրամասն գրել են հայ պատմիչներ Փավստոս Բուզանդը և Մովսես Խորենացին: Այդ թագավորների վերաբերյալ տեղեկություններ են պահպանվել նաև հույն ու լատին պատմիչների երկերում: Միևնույն դեպքերի մասին Փավստոսի և Խորենացու գրածների մեջ որոշ տարբերություններ կան: Այսօր այս երկու պատմիչների, ինչպես և այլազգի հեղինակների (օրինակ, Ամիանոսի) գրածները համադրելով ջանում ենք գտնել ճշմարտությունը այն անցած ժամանակների մասին:

Ըստ որոշ տվյալների՝ Արշակ II-ը Մեծ Հայքի թագավոր է եղել մոտ 30 տարի, ուրիշների հաշվով՝ 23 տարի՝ 345—368 թվականներին:

Նա հզոր թագավոր էր, հայոց Արշակունիների մեջ, Տրդատ Մեծից հետո ամենահզոր թագավորը: Արշակ Երկրորդի քաղաքական գիծն էր՝ պահպանել հայոց միասնությունը, Մեծ Հայքի ամբողջությունն ու քաղաքական անկախությունը: Հայ նախարարների պարկասեր և հունասեր (բյուզանդա-հռոմեասեր) կուսակցությունների հակամարտությունն ավելի էր սրվել:

Բյուզանդական կողմնորոշում ունեցող նախարարները ասում էին, որ պետք է միշտ հավատարիմ լինել քրիստոնյա հույներին, քանի որ մենք և քրիստոնյա ենք: Սրանց պաշտպանում էր հայոց եկեղեցին: Իսկ պարսկական կողմնորոշում ունեցող նախարարները ասում էին՝ Հռոմը, հույները մեզ միշտ խաբել են, և մենք միշտ տուժել ենք Հռոմին ապավինելով, հույների հետ դաշնակցելով ու Պարսկաստանին մեր դեմ թշնամացնելով:

Տարբեր կողմնորոշում ունեցող նախարարական խմբակցություններին միմյանց դեմ գրգռում էին Պարսկաստանն ու Հռոմը (Բյուզանդիան): Այս երկու մրցակից թշնամի պետություններից յուրաքանչյուրն ուզում էր, որ ինքը իշխի Հայաստանի վրա: Նրանցից թե՛ մեկը, թե՛ մյուսը ձգտում էր թուլացնել հայոց կենտրոնական պետությունը՝ երկիրը հեշտությամբ նվաճելու համար: Նրանք դեմ չէին նաև Մեծ Հայքն իրար մեջ երկու մասի բաժանելու գաղափարին:

Արշակ II-ը իր հոր՝ Տիրանի նման ոչ պարսկական, ոչ էլ բյուզանդական կողմնորոշում ուներ: Նրա կողմնորոշումը հայկական էր: Նա ջանում էր նախ խաղաղ ճանապարհով իրար հետ հաշտեցնել նախարարների հակառակորդ խմբակցությունները: Երբ այդ արդյունք չտվեց, նա պատրաստ եղավ չհաշտվողներին և հայոց գահի դեմ դավողներին դաժանորեն ոչնչացնել: Այպ՝ Արշակը ջանքեր էր գործադրում, դիվանագիտություն էր անում և իրեն բարեկամ էր ցույց տալիս մերթ Պարսկաստանին, մերթ Հռոմին: Իսկ սրբված իրադրության ժամանակ, երբ Պարսկաստանը կամ Հռոմը զորքերանակ էին ուղարկում Հայաստանին հնազանդ պահելու, Արշակը կարողանում էր դիմադրել ու հաղթել նրանցից յուրաքանչյուրին, նրանց, ով ուզում էր նվազեցնել կամ վերացնել հայերի պետական անկախությունը: Նախարարներից Արշակի անկախ քաղաքականության գլխավոր նեցուկը Գղակ Հայր Մարդպետն էր:

353 թ. Կեսարիայում կաթողիկոս ձեռնադրվեց Հուսիկ կաթողիկոսի թոռ Ներսեսը, որ հետո կոչվեց Ներսես Մեծ: Արշակը Ներսեսին կաթողիկոսին, նախարարների ուղեկցությամբ, շքախմբով ուղարկեց Կոստանդնուպոլսից Բյուզան-

դիայի (Հռոմեական կայսրության) հետ բարեկամական կապեր հաստատելու նպատակով: Հռոմի Կոստանդիոս II կայսրն էլ իր հերթին օգտվում է առիթից Հայաստանն իր կողմը գրավելու: Նա, իբրև բարյացակամ քայլ, ազատ արձակեց Արշակ II-ի երկու եղբորորդիներին՝ Գնելին և Տիրիթին: Բայց իբրև պատանդ պահեց Ներսես կաթողիկոսին: Որ և զայրացրեց հայոց թագավորին. «Սաստիկ զայրույթ արտահայտեց կայսեր դեմ,— գրում է Փավստոսը,— թե ինչպե՞ս նա համարձակվեց արգելանքի ենթարկել այնպիսի մեծ և պատվավոր մարդու, որ մի աշխարհի և թագավորության գլխավոր ուսուցիչն ու առաջնորդն էր»:

Արշակ II-ը իր գահակալման օրից Հայաստանի բոլոր զորաքանակների սպարապետ էր նշանակել Վասակ Մամիկոնյանին, որ մեծ ռազմագետ էր և անվախ զորավար: Նա հուսալիորեն պաշտպանում էր Մեծ Հայքի սահմանները, և հայ ժողովուրդը շատ տարիներ խաղաղ բարգավաճում էր: Ըստ Փավստոսի, Վասակ Մամիկոնյանն իր զորքով, ի պատասխան Բյուզանդիայի կայսեր հակահայկական արարքի, արշավել է բյուզանդական հողերի վրա, գրավել Գամիրքը (Կապադովկիան):

Հայոց արքունիքի խաղաղությունը խախտեց մի միջադեպ՝ Արշակ թագավորի երկու եղբորորդիների հետ կապված: Դա այսօր մեզ ցույց է տալիս նաև Արշակ II-ի, որպես քաղաքական գործչի, ներքին էությունը: Գնելը, գալով Հայաստան, գնում է իր պապի՝ կուրացված Տիրանի մոտ, որ ապրում էր Կուաշ (Կոշ) ավանում: Տիրանը, որ ծանր ապրումներ էր ունեցել իր որդու և Գնելի հոր՝ Տրդատի Կոստանդնուպոլսում սպանվելու պատճառով, թոռանը մեծ սիրով է ընդունում և պատվիրում է բնակություն հաստատել իր մոտ՝ Կուաշում: Նա գնելին է հանձնում իր հարստությունը, կալվածքները, գյուղերը: Գնելն ամուսնանում է Սյունյաց հզոր իշխան Անդովկի դստեր՝ գեղեցկուհի Փառանձեմի հետ: Ինչպես Փավստոսն է հաղորդում, Գնելին սիրում էին նախարարները, ամենուրեք նա մեծ հարգանք ուներ:

Փավստոսը պատմում է նաև, որ Արշակ թագավորի մոտ Գնելին չարախոսել է նրա հորեղբորորդի Տիրիթը, քանի որ իբր նա՝ Տիրիթը, ցանկություն է ունեցել տիրանալու Գնելի կնոջը՝ Փառանձեմին:



Ներսես Մեծ

Խորենացին իր հերթին գրում է, որ Գնելին թագավորի մոտ չարախոսել են Տիրիթը և նրա մտերիմ ընկեր, Արշակ թագավորի զինակիր Վարդան Մամիկոնյանը:

Ճիշտ է սա, թե ոչ, շատ էլ կարևոր չէ, կարևորն այն է, որ Արշակը հանձին Գնելի տեսնում էր մրցակցի և գահի հավակնորդի:

Ինչպես գիտենք, ըստ ընդունված կանոնի՝ արքունական Այրարատ աշխարհում թագավորի ժառանգներից մշտական բնակություն կարող էր հաստատել միայն թագաժառանգ որդին (կամ թագաժառանգ թոռը): Թագավորի մյուս որդիները կամ թոռները, եղբորորդիները իրավունք չունեին բնակվելու Այրարատ աշխարհում: Նրանք պետք է բնակվեին Վասպուրականում կամ մի այլ տեղ: Գնելը բնակվում էր Կուաշում, որը Այրարատի կենտրոնական մասում էր գտնվում: Բացի դրանից, Գնելին հովանավորում էր պապը՝ նախկին թագավոր Տիրանը: Գնելը մեծ կարողություն էր ստացել պապից, այն էլ թագավորական ունեցվածքից: Նախարարները նրան մեծապես հարգում էին: Այսքանը քիչ չէր, որպեսզի հայոց միապետը նրանից լրջորեն զգուշանար: Արշակը արևելյան բռնակալ էր, ժամանակի խոշոր պետական գործիչ: Նա չէր

Արշակ և Գնել

կարող հանդուրժել, որ արքունիքի կողքին լինի մի այնպիսի ուժեղ դեմք, ինչպիսին Գնելն էր:

Մենք չգիտենք Գնելը հայոց գահի նըկատմամբ հավակնություն ունեցե՞լ է, թե ոչ: Հնարավոր է, որ ունեցած լինի: Բայց դա էլ կարևոր չէ: Արշակը լուրջ կասկածներ է ունեցել նրա նկատմամբ, և դա բավական էր, որ թագավորը որոշեր Գնելին ասպարեզից հանել:

Խորենացին պատմում է, որ Արշակը կարգադրում է Գնելին հեռանալ Այրարատից և բնակություն հաստատել Վասպուրականի Աղիովիտ կամ Առբերան գավառներում ու այլևս չշփվել նախարարների հետ: Գնելը կատարում է թագավորի հրամանը՝ փոխադրվում է Վասպուրական: Այդ առթիվ կուրացված Տիրանը խիստ խոսքեր է ուղղում իր Արշակ որդուն, թշնամություն է ցուցաբերում նրա նկատմամբ: Արշակ թագավորը գաղտնի հրաման է տալիս ոչնչացնել իր հորը, և Տիրանին նրա սենեկապետները խեղդում են ու թաղում Կուաշում (այնինչ՝ իբրև հայոց թագավորի՝ նրա դիակը պետք է տանեին Դարանաղյաց գավառ և թաղեին Անի ամրոցում՝ հայոց թագավորների գերեզմանատանը):

Թագավորը Գնելին ասպարեզից հանելու մտքից չի հրաժարվում: Հավանաբար, Գնելին Վասպուրական ուղարկելուց և Գնելի հովանավորին՝ իր հորը ըս-



Փառանձեմ

պանելուց հետո էլ Արշակին հանգիստ չի տվել նախարարների կողմից Գնելի սիրված լինելու հանգամանքը: Խոշոր բռնակալները միշտ էլ կասկածամիտ են եղել: Իրենց գահին սպառնացող ամենափոքր վտանգը նրանք ջանացել են արմատից վերացնել: Եթե նրանց սոսկ թըվացել է, որ նման վտանգ կա, միևնույն է, ամեն ջանք գործադրել են այն վերացնելու համար: Այդպիսին են եղել բոլոր մեծ միապետները՝ Նարամ-Սուենից սկըսած, մինչև Ներոն և սրանից էլ մինչև Պետրոս Առաջին և Ստալին:

Արշակ II-ը բռնակալ թագավոր էր: Դա բարոյական տեսակետից վատ երևույթ էր, բայց նրա բռնակալությունն էր, որ մոտ երեսուն տարի Մեծ Հայքը պահեց որպես անկախ ու հզոր պետություն:

Արշակը Վարդան Մամիկոնյանին գաղտնի կարգադրում է սպանել Գնելին: Եվ, ինչպես գրում է Խորենացին, Վասպուրականի ծաղկանց լեռներում կազմակերպված որսի ժամանակ Վարդանը Գընելին սպանում է:

Փավստոսն ու Խորենացին վկայում են, որ Արշակ թագավորը կեղծավորաբար լաց ու կոծ է անում Գնելի թաղման ժամանակ, հրամայում է շքեղ, մարդաշատ թաղում անել: Սա ևս խոշոր բռնակալներին հատուկ արարք էր. պետք էր իրենից հեռացնել անմեղ Արշակունու սպանության խնդիրը:

Արշակ թագավորը տեր է դառնում Գընելի ամբողջ ունեցվածքին, որ իր հայր Տիրանն էր տվել նրան: Նա նաև Գնելի կնոջը՝ Փառանձեմին իր կինն է դարձնում:

Բայց դրանով էլ չի գոհանում Արշակը: Չէ՞ որ Գնելի սպանության գաղտնիքը, այն, որ ինքը՝ թագավորն էր կարգադրել նրան սպանել, գիտեին Տիրիթն ու Վարդանը: Եվ ահա նա հանձնարարում է իր սպարապետ Վասակ Մամիկոնյանին ըսպանել երկուսին էլ: Արշակն օգտագործում է Մամիկոնյան երկու եղբայրների՝ Վասակի և Վարդանի հակամարտությունը մի հարճի կապակցությամբ: Այդպես, Վասակը սպանում է իր եղբորն ու Տիրիթին:

Այս ամենին ավելանում է նաև հետևյալը. Արշակ թագավորի գլխավոր կինը՝ հայոց տիկնանց տիկինը Բյուզանդիայի կայսեր ցեղից մի հույն էր՝ Ոլիմպիան: Թագավորի նոր կինը՝ Փառանձեմը, որոշում է սպանել նրան: Փավստոսն ու Խորենացին դա բացատրում են նրանով, որ Փառանձեմը նախանձում էր Ոլիմպիային, ուզում էր ինքը լինել հայոց տիկնանց տիկին՝ թագուհի: Դա ճիշտ պետք է համարել: Բայց, հավանաբար, ուրիշ խնդիր էլ է եղել: Ոլիմպիան հույն էր և Բյուզանդիայի աչքն ու ականջն էր հայոց արքունիքում: Նրանից կուզենային ազատվել թե՛ Արշակ թագավորը, թե՛ հունատյաց Փառանձեմ տիկինը և թե՛ որոշ նախարարներ: Փառանձեմը, հավանաբար, Արշակի համաձայնությամբ նենգ քայլի է դիմում: Պալատական քահանա Մրջյունիկին նա դրդում է հաղորդության հացի հետ թույն խառնել և տալ Ոլիմպիային (հաղորդության նյութը հաց ու գինի է, հաղորդություն առնելը քրիստոնյաների կարևոր խորհուրդներից է. այդ հացն ու գինին խորհրդանշում են Հիսուս Քրիստոսին, պատարագի վերջում ընդունելով դրանք, քրիստոնյան հաղորդակցվում է Քրիստոսի հետ):

Ահա քրիստոնյաների համար այդ սուրբ ծեսը օգտագործվում է մարդասպանության ստոր նպատակով:

Քաղաքական գործիչները ասում են՝ նպատակը արդարացնում է միջոցը, այսինքն՝ ինչ միջոց ուզում ես գործադրիր նպատակիդ հասնելու համար: Սա ամենաանբարոյական սկզբունքն է, որ կիրառվել է աշխարհի բոլոր թագավորական պալատներում, մեծամեծների, պետական գործիչների շրջանում: Այն եղել է նաև հայոց արքունիքում:

Ներսես կաթողիկոսը, որ բարոյականության մեծ պաշտպան էր Հայաստանում, Արշակ թագավորի խարդավանքների պատճառով հանդիմանում էր նրան: Ներսես Մեծը ջանքեր էր թափում քրիստոնեական բարոյականությունն ու սերը պատվաստել հայ մեծամեծների մեջ: Սակայն քաղաքականությունն ու բարոյականությունը իրար չէին միանում: Ի վերջո Ներսեսը, չկարողանալով իր նըպատակն իրականացնել, մի կողմ քաշվեց ասպարեզից:

Արշակ II-ի և Փառանձեմ տիկնոջ ամուսնությունից ծնվեց նրանց Պապ որդին, որը հայոց հաջորդ թագավորը պետք է դառնար:

Իսկ Արշակ թագավորը պատրաստվում էր պարսից Շապուհ II-ի դեմ երկարամյա և ահեղ պատերազմի:

(շարունակելի)



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Ամառվա տապին

Ամառվա տապին զեփյուռն է շրշում,
Կտրում, անցնում է դաշտ ու արահետ,
Նրա համբույրից տերևն է խշշում,
Քամին գգվում է ծառ ու ծաղկի հետ:

Երկնքի կապույտ լազուրում անտակ
Լոկ մի ամպիկ է մնացել արդեն,
Կարծես տռնում է մի մեծ հաղթանակ
Գոռ քամիների ու արևի դեմ:

Ու լճակի մոտ կամ գետի ափին,
Ուր արեգակն է անիմաստ այրում,
Մանկան ծիծաղը հաղթելով տապին՝
Զնգում է անհոգ, հաղթական զնգում:

**ՄՀԵՐ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
Ղափան, № 7 միջն. դպրոց, 7-րդ դաս.

Աշունը եկավ
Հազար բարիքով,
Մարդուն խոստացած
Պարտք ու տալիքով:

Աշունը եկավ
Ամպ ու մշուշով,
Նախշած ու ներկած
Ծրթունք ու թշով:

Աշունն ի՞նչ գիտեր,
Որ իր հին ճամփով
Եղբայրն է գալու
Ձերմակ մորուքով:

**ԵՐԱՆՈՒՀԻ ԵՐԵՄՅԱՆ**
Սուխումի, Ն. Յաշտխվայի № 2 միջն. դպրոց, 4-րդ դաս.

## Հայաստան

Մենք սիրում ենք Հայաստանը,
Մեր կյանքի սարաստանը,
Կարկաչահոս աղբյուրի պես
Ջուր է տալիս մեզ ասես:

Նա սարերի վրա հիմնված
Մի երկիր է գեղեցիկ,
Որ արևի նման պայծառ
Հուսադրում է մեզ հեռվից:

Բայց աղետը այս չարագործ
Մեր սրտերը ավերեց,
Հայոց հողը սևով պատեց,
Ու արևը գունատվեց:

Բայց ես գիտեմ, որ էլի
Մեր արևը կշիկնի,
Ու դեմքերը մեր մթնած
Կժպտան հանկարծ:

Գիշեր է, գիշեր, աշնան զով գիշեր,
Կապույտ երկնքում աստղերն են լողում
Եվ կարմրագլուխ լուսինը սիրուն:
Տերևը դեղին ծառին համբուրում
Եվ օրորվելով հեռու է թռչում,
Լույսերը սիրուն հանգչում են մեկ-մեկ,
Խաղաղվեք մարդիկ ու հանգիստ քնեք:

**ՍԵՅՐԱՆ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ**
ԼՂԻՄ, Մարտունու շրջան, գ. Ննգի, 6-րդ դաս.

Ոչ, ամսագրի հաջորդ չորս էջերի դասավորությունը սխալ չէ: Ուղղակի պոկեք 15, 16, 17, 18 էջերը կազմող ընդհանուր թերթը, ծալեք մեջտեղից այնպես, որպեսզի պահպանվի փոքր էջանիշերի (1, 2, 3, 4, 5, 6, 7, 8) հերթականությունը: Կստացվի մի «գիրք», ավելի ճիշտ՝ գրքի առաջին «մամուլը»: Երկրորդ և երրորդ «մամուլները» նույն ձևով կտրպագրվեն ամսագրի №№7 և 8-ում (վերջում կլինի փոքրիկ բառարան): Երեք «մամուլները» իրար վրա դնելով կարելուց, կողերը սրիչի օգնությամբ կտրելով բացելուց և հավասարեցնելուց հետո ձեր գրադարանը կհարստանա ևս մեկ գրքով:

# Դիլմանի հերոսը



Գնա՛, Թիֆլիզ պառգուգ մըր Նազարբեգովին ըսա,
Ես մեղավոր չիմ, ես իմ պառտքն ա կկադարիմ,
Հիմցի՝ կռնադ մառտ լե էղնինք,
Բդի կռվինք, բդի մեռնինք մըր տան շեմի վրեն
Ու դուշմնին ճանպա չիդանք,
Է՛լ նահանջելու տեղ չունինք,
Մենք մըր վրեն էգող Խալիլ փաշին կզարգինք,
Ծաղից շադ կերտա, քչից՝ քիչ...
— Փաշա՛, հ՚ըղմալ չէղնի, հե՛, ըբա՝ խազախներ...
— Դոխտո՛ւր, նորեն կըսիմ՝ իմցի,
Էդ ո՞ր կռվին մարտ չըսպանվե,
Դու կհասկնա՞ս՝ ի՞նչ ա կըսիս,
Էդ ո՞ր էրգիրն ա՝ որ մզի զինվոր կիդա,
Էդ ո՞ր ասկի մերերն ին՝
Որ մզի տղա յա կբերին,
Թե՞ աստված էրգնուց մըզի մարտ կիդա, մը՛ կարտա,
Չէ՛, բաբա՛մ, չէ՛, իզուր տեղ նադարոս
Ես լսեր իմ, որ Լոխման հեկիմ,
Մե ձեռ ուներ դեղ ու դարման,
Մեգէլ ձեռ՝ զենք, կէրտեր կռիվ,
Թա՛րկ էրա քու մարտասիրագան քարոզ,
Գնա հեձի քու ձին, առ քու թվանք,
Հընգի իմ հեդև էրտանք կռիվ,
Մենք մեղավոր չինք, գնա՛, էդ խորոդ խոսկեր
Թուրկերուն ըսա, թըխ քին մի հասկնան,
Մգա կռիվ ա, իսկագա՛ն կռիվ,
Յա՛ն մենք բդի զարգինգ, աբրի՛նք,
Յա՛ն բդի մըր գլոխ դնինք թուրկի խամի հա՞ռեճ,
Էղավ, բամի հասկցա՞ր, թե՞...
Բժիշկ տեսավ, որ հ՚անդա քովման էգան,
Էգա՛ն, էգա՛ն հայ կամավորներ,
Նվագախումբ զարգեց, «Ինչպե՞ս արծիվ».
Էրգինք գեդինք ձեն տվին իրար,
— Առե՛ճ, իմ քաջե՛ր,— բոռաց ըսեց Անդրանիգ։
Ձին իդահաղ թռավ, գնաց,
Թռա՛վ, ցոլա՛ց ու ուր հ՚օղներ զարգեց գեդնին,
Գեդին ճղճղաց, քարեր թռան չուրի էրգինք,
Ձին որ հ՚օղներ զարգեց ժեռ քարերուն,
Կրագ թռավ ժեռ քարերուց,
Անդրանիգ մեգ լե զանգուն զարգեց,
Ձին իդահաղ թռավ, գնաց,
Ու Անդրանիգին տարավ դեմի մութ ու մըղըբ,
Տարավ հանեց մե բանձըր սարի վրեն,
Դիմաց Ավարայրն էր, մութ էր, բան չէրևեր,
Կըսիս՝ Հայոց Վահագն աստված հ՚իճեր,
Էգեր էր Էրգիր մաքրեր դուշմնից,
Անդրանիգ տեսավ՝ հեռու-հեռու լուս կերևա,
Լուս ա հ՚իճե սարի գլոխ,
Միտք էրեց միտք,
Հիշեց, որ հոդի Քաջ Վարտանի գերեզմանն ա,



Խորհրդային Հայաստանի և Միության հայաբնակ վայրերում սասունցիներից, մշեցիներից, շապինգարահիսարցիներից, ալաշկերտցիներից, վանեցիներից, եղեգնաձորցիներից, գորիսեցիներից, կարինցիներից ու կարսեցիներից գրի եմ առել բանահյուսական բազմաթիվ նյութեր՝ նվիրված Անդրանիկ զորավարի ու նրա մարտական ընկերների սխրանքներով հարուստ կյանքին:

Գրառված նյութերի մեծ մասը վերցված է ժողովրդական հերոսի նախկին զինվորներից ու զինակիցներից: Իբրև մայր-պատում հիմք է ծառայել հորս՝ Մուշեղ Մխիթարի Սահակյանի (Ալաշկերտի Խաստուր գյուղացի) տարբերակը՝ պահպանելով թե՛ բարբառը և թե՛ պատկերավոր խոսքը (որոշ տեղերում գրության բարբառային կերպը մոտեցվել է գրականին՝ հաշվի առնելով «Պիոների» ընթերցողների տարիքը):

Համահավաք ստեղծելիս, բնականաբար, համեմատվել ու համադրվել են բոլոր տարբերակները, առավել հաջողված ու գեղարվեստական արժեք ունեցող դրվագները, հատվածները, նույնիսկ առանձին տողեր մտել են մայր-պատումի մեջ, տեղափոխվել ու արժեքավորվել են որպես մեկ վիպասքային գործ: Այդ միջամտությունը և տողատումը կատարվել են մեր կողմից:

«Դիլմանի հերոսը» «Ասք Անդրանիկ զորավարի մասին» վիպասքի մի ամբողջական հատվածն է:

ՍՈՒՐԵՆ ՍԱՀԱԿՅԱՆ
բանասիրական գիտությունների թեկնածու

**Գիշեր էր, մութ էր, մըղըբ,**
**Մաղ կոխեր մարդու աչք, բան չըր տեսնի,**
**Է՜, ի՞նչ տեսներ, վի՞ր տեսներ,**
**Ձըմքի էրգինք լե խռովեր էր,**
**Աստղունք էրգինք չըն ճըրստե,**
**Բան էնտեղ էր հասե, օր Մասիսու**

Ճերմակ–ճերմակ գլոխ լէ չըր էրեվե.
Մո՛ւթ էր, անձրև՛ էր, տի՛լ էր...
Իդա դեն սելաֆ, ինա դեն՝ կարմիր ալաֆ ,
Կրակ ընգեր էր հայերու տներ, գվառեր,
Էլ չըր հարցուցե՝ հարուստ ու աղքատ:
Թուրք ասկրներ առած են կեռ խամեք,*
Ընգեր են հայերու դուռ ու փողան,
Մարդ կզաշեն ու հարստուտեն,
Գզարգեն ու կըսպանեն,
Չըն խնայե բիլա օրոցքի միջու էրեխուն,
Ըխտյարներուն, պառվըներուն:

Թուրքի Թալյատ փաշեն
Հըմնօր յուսուն դըռ նամազ չէրած
Ուր գլխու ֆես կտաներ ու կթաթխեր
Հայու անմեղ արնան մեջ,
Պոլսուց վազմանց կէրտեր գհասներ Բեռլին
Ու զէդ ֆես կդներ
Թագավոր Վիլեմի գլոխ,
Էն Վիլեմի օր փուչ բանով մի
Պատերազմ ըսկսեց ուռուսներու հետ,
Արունք ու ավերք բերեց էրգրի հէրես,
Էն Վիլեմի, օր տաս–տըսնուհինգ տարի հ՚առեճ
Էգավ Պոլիս, Սուլտան Համիդ էնոր թըպատեց,
Էրգու–իրեկ կնիգ լէ փեշքեղ տվեց ընդոր,

Թալյատ հեդն կէրտեր գհասներ
Ֆռանզստան, անգլյացու ու իտալացու կուշտ
Քածիզլամիշ կէղներ ուժեղներու հ՚առեճ,
Գիլեր–կօխպեր, թե՝
Դուք չգինաք, թե ի՞նչ ա գընցնի, կդառնա,
Հայեր մզից կոտորած–պռծած ին,
Էլ մըր վրեն հալ չկա,
Էգեք մըզի օգնուտեն, մեխկ ի՛նք, մե՛խկ...
Մարդիք ուրանց գլոխ կտանէն կբերեն,
Չըն ավդնե, չմքի էն ինչ ուրանց կըսեն,
Հայու գլոխն են հանած:

Թալյատ գիկեր գհասներ Պոլիս,
Կերտեր կմդներ սուլտանի Քոշկ ու սարեն
Գկանչեր Էնվերին ու Ջամալին,
Կծիծղեր ու կպադմեր.
— Է՛ֆենդիք, ըսօր հ՚ըմալ իմ խապե գաշխարհ,
Օր ես լէ չըմ կռնա հավադա,
Թե էդքան հունար ո՞ր տվեց ընձի,
Թուրկեր բդի իմ վրեն քումբետ* սարկին,
Բդի մոմ վառին իմ վրեն,
Ես՝ հ՚էրգրորդ Մահմադ...

Էն անօրէն մարտակեր գազան
Բեդի ճոտի հեդ քիչ մը խաղաց ու ըսեց.



Կովել ու մեռնել մըր էրգրի համար,
Բաա՛ ու մը վախեցի ըսելուց,
Օր մենք լէ կռվել գիտնանք՝ հ՚ըմնուց առավել,
Օր մենք լէ աբրել գիտնանք՝ հ՚ըմնուց առավել:
Իմալ կենձկլտան խամհին զարգիս՝
Անդրանիկի խոսկեր
Դաղեցին Չեռնոզի քանալ գլոխ:
Թռավ հ՚էծավ ուր Ասլան անվոր ճերմագ ձին,
Գնաց հասավ ուր չադրի դուռ,
Կարգադրեց դուրս հանին ուր դրոշագ,
Բոռաց ըսեց.— Ջերեջի՛, վերո՛ւ թուխտ ու մադիտ,
Գրա՝«Իմ քան ֆիդաից,
Թըխ հըմեն հավաքվին, իգան,
Մեք հուդա չընք էգե, օր գտան դնինք,
Մենք արտար կռիվ ունինք, բը՞րի էրտանք,
Օր հախտինք, ու մըր պադիվ փրգինք»:
Անդրանիկ հակավ կաբեց ուր զենք ու զրահ,
Պաղռոնդաշ թալեց խաչուփառ,
Զարգեց ձիու կողին, ձին տըկաց, հ՚էլավ լիզու.
Օրր ձըր պես էնինք, մզի էլ ո՞ր գհավաղա,
Ես քզի ի՞նչ իմ էրե...
— Մզա խոսալու վախտ չէ, նա լէ արտարանալու—
Մզա հըմենքսի մեղավոր ինք.
Հըմենքսի՞... հասկցա՞ր:
Անդրանիկ էնքան էր հեռսոդե,
Օր հ՚ըմեն բան մոռծեր էր,
Ընդրա հ՚անկին նա՛ մարտ գիկեր, նա՝ ձի,
Զախտ կեներ օր շուդ մի հիններ կռվու դաշտ,
Դուշմնի պադասխան իդեր...
Էդ վախտ վազմանց
Ընդրան մոդգցավ բժիշկ Պոնապարտ,
Էգավ, բարև բռնեց, կայնավ.
— Հը՞, ինն կա, դոխտո՛ր,— հառծուց Անդրանիկ:
— Փաշա՛, չէղնի՝ գուզիս Արազ հ՚ըդնիս,
Էրտաս Խալիլ փաշի վրեն կռիվ...
— Ջա՛նըմ, դու դոխտուր մարդ իս,
Գնա հիվանդներու, յարալուներու մոդ,
Քու ի՞նչ բանն ա փոլիտիկայի հեդ,
Ախր, մըր ասկի տուն քանդեր ա էն բան,
Օր հ՚ըմնքսի կէնինք էն, ինչ մզի չպատկանի,
Դու լէ մըր քանիմ վարժաբեդներու նման
Դառծեր իս փոլիտիկան
Գուզիս քու գաղափար հա՛ռեն տանիս,
Թա՛րգ տուր, թա՛րգ էրա, հ՚իմցի ու տես՝
Դուշման էգե չոկե մըր վրեն,
Դանագ դրեր ա մըր բողազ, գուզա խեխտա,
Դու լէ իմ գլխուն կազոսիգ կկարտաս...
— Փաշա՛, գոնե հազար խազախ էղներ մըր հեդ...
— Հինգ հարուր լէ բոլ էր, ուրանց գինուցբով.
Չկա՛, չի՛գան, հրաման չը՛ն տվե,

— Իմ անունից հ՛ըմնուն գացե՛ք ըսե՛ք.
Սրի քաշե՛ք հայերուն,
Որն օր բիրդանց խղճա, յա մոռնա իմ հրաման,
Ջէնոր տեղնուտեղ կկախիք, կվառիք...
Էնվերն ու Ջամալ ուրանց գլոխ տմբընցուցին
Ու հ՛էլան գացին շադ կատղուզ,
Չըմքի զէղ անաստված գործ ու գործողութեն
Ուրանց սրդով էր, ուրանց կամքով:
Խալիլ փաշեն քիչ մի ուշացեր էր,
Էգավ ուր գլոխ հ՛ինուց ընդրա հառեն,
Ըսեց.— Ես կէրտամ հայերուց կխլիմ Էջմիածին,
Կերտամ, գհասնիմ Հ՛էրևան, Գյոկչա,
Ցուղով կառնիմ Նախճվան,
Անդրանիկի գլոխ լե քըցի կբերիմ:
Թալյատ հ՛էվելի շադ փորձ ուներ,
Աշխարքի վեր ու գիր գիներ,
Ըսեց.— Խալիլ փաշա՛,
Դու հայերուն լավ չըս ճանչնա,
Ընդրանք զըրմնին փառպրի սերմ,
Ինչքան կդրիս, տաս էդքան կբուսնին,
Ընդրանք զըրմնին փառպրի սերմ,
Չըմքի ընդրանց կողորեցինք, տեղահան էրինք,
Ընդրանց մեր ու մանուզ մզա հերոս ին,
Ընդրանք ունին կամավորներ, քան ֆիդայիք,
Ընդրանց հեղև կայնուզ ա մենծ ուռուս,
Աշխարքի տուն անուշ լիզուն ա կերե,
Օսմանցի թուրկերսի, օծու լիզու ունինք,
Էղի խո՛ աշխարքին իդա լե քանի տարի այան ա,
Գերմանու փոռնտ ռուսներ նեղվեր ին,
Գուզին մըր դեմ կայնուզ զորկեր եղ քաշին,
Ընդրանք շուդով կթռղին, կէրտան,
Նիզոլան խո ծուռ չէ,
Ուր էրգիր իդա ալամաններուն ,
Հ՛ինք էրմեններուն պաշտպան կայնի,
Գնա՛, Խալի՛լ, գնա՛, կռնաս խապա,
Հըմա քու գլոխ կախ չիգաս եղ,
Քու ճանպին ո՛ր կպադայի, փոշի դառծու:

Մզա դիմացն Արազն ա՝ կաղղուզ, փրպրողուզ—
Դիմաց մո՛ւթ ա, մըղըր:
Խազախներ թոփ, ջաքարխանեն բերած ին Ջուլֆա,
Իդա քանի օր հ՛անզաջ ձենի ա պայած՝
Թե եպ բդի հրաման էղնի,
Օր մղին կռվու դաշտ ու տեսնին,
Թե վի՞ր մամ իդահեղ տղա կբերա,
Հըմա Թիֆլիզու հրաման չկա ու չկա...

Խազախներու հեդ ին հայ կամավորներ,
Ընդրանք լե զէղ հրամանին ա բանդ էղած:
Անդրանիկ քանիմ անկամ գնաց,



Գնա՛ց, հրամանդարի մոտ, ըսեց,
Թե՝ հրաման տվեք.
Հըմա ընդրանք գլխներ տարան-բերեցին,
Դառծան ըսին.— Չէ՛, գենեռա՛լ, չէղնի,
Մենք մրունի գլխուց ձեռ չընք քաշե,
Օր առանց հրամանի կռվու մեջ մղինք:
Եղի անգամ օր Անդրանիկ գնաց,
Գեներալ Չերնոզ բերեց ու հրաման կարտաց.
— Հ՛ըմնուն ըսե՞ք,
Մենք թուրկերու հեդ է՛լ կռիվ չունինք,
Հ՛ըմենտի բռնեք դեմի Թիֆլիսու ճանպէն:
Կրազ թապավ Անդրանիկի գլխուն,
Հ՛աճկեր մթնդան,
Ճակտի կարուդ էրազներ թռան-կայծան,
Հեռսոդավ ըսեց.
— Տո՛, իմա՞լ թե նահանջ, հ՛ընչի՞,
Հըբա իդա ծանդըր վախտ կռվուց կփա՞խինք,
Իդա էղավ հայերե՞ն, էլավ ըմնուս սրդո՞վ,
Դուք գրագետ, ուսումնական մարդիք,
Չը՞ք հասկընա, օր զորկ եղ ու հառեճ տալով,
Ասկ մի հօտկի-ձեռկի հեդ կմեռընկ,
Ամո՛տ ա, ա՛մոտ, ամըրցեք, մա՛րդիկ,
Արո՛ւն հեյեր ա՝ աշխարքն ա լըլե,
Իդա ձըր բռնուց գործ դավաճանուտե՛ն ա,
Ձըր արարմունք՝ նամարդուտե՛ն...
Անդրանիկ էնքան էր հեռսոդե,
Օր կրազ կթափեր ընդրա հ՛աճկերուց,
Հ՛ինք ուրին մոռծեր էր, էնքան էր մոռծե,
Օր լավ գիներ, թե ուրնիծ մենծավորի հեդ
Ըհիմալ չըն խոսի, իրավունք չուներ,
Մոռծեր էր զըմեն բան՝ գաշխարկ ու օրենք:
Բուխարի փապախ քաշեց ուր գլոխ,
Քաշեց օսկեծե խոբուռից կէծկլտան թուր,
Թռա՛վ, կայնավ փլի վրեն, բռռաց, ըսեց.
— Իդա իգին զրուզա մինազ ձըր համար,
Ըղոր լսել ձըր պարդագանուտենն ա,
Հմա ես ու իմ զինվորներ հայ փիդա ինք,
Մենք հ՛էրտում ինք տվե չուրի օրիկն ի մահուն
Կռվել հայու իրավունքի, Հայաստանի համար,
Թիֆլիզու էգած հրաման հըդ մզի կա՞ք չունի,
Մենք էդի չը՛նք կոնա կադարի,
Օր ձըր պես էնինք, մզի էլ ո՞ւր գհավադա,
Պարոն Չեռնո՛զ, գնա՛ ու հուր պետկ ա՝ ըսա՛,
Օր Հայոց Զորավար Անդրանիկ
Ուր հինգհարուր կամավորներով, ըսօրվընեն
Էլ չը՛ն էնթարգվի Թիֆլիսո՛ւն, Պետրէպոլի՛ն,
Ըսա՝ օր մենք լե խե՛լկ ունինք, մա՛րդ ինք,
Ըսա՝ օր մենք լե ա՛սկ ինք, ժողովո՛ւրդ,
Ըսա՝ օր մենք լե էրգի՛ր ունինք ու հայրենի՛ք,
Ըսա՝ օր մենք ուխտեր ինք

●●●

Այս ի՞նչ եղեռն է նորեն կրկնվում,
Հայ ժողովրդի կյանքն է խաթարվում,
Քո ջինջ աչքերից ժպիտն է կորել,
Քո թախծոտ աչքում արցունքներ կան դեռ,
Դու լաց ես լինում, դու ողբում ես դեռ
Այն մանկանց համար, որոնք մահացան
Դեռ տուն չհասած,
Թախծոտ աչքերում մի կաթիլ ժպիտ,
Պայուսակը պինդ սեղմած կրծքներին
Ու մոր անունը շուրթերին սառած:
Ա՜խ, նրանք անձա՜յն, անձա՜յն մահացան,
Որ ոչ մի հայի նեղություն չտան:
... Ինչպե՞ս է, որ դեռ չես խելագարվել,
Տխո՛ւր Հայաստան:

## Ախ, էդ ոնց տանես

Անցնում են օրեր, անցնում ամիսներ
Սև դեկտեմբերյան աղետի օրից,
Հանդարտվեց օրը, փոթորիկն անհագ,
Ամեն մեկը իր հոգսերին անցավ:
Թվում է կյանքում ոչինչ չփոխվեց,
Ամեն ինչ նույնն է առաջվա նման,
Ոչ, սուտ է, սուտ է, ես չեմ հավատում,
Նորից զսպում ես քեզ, իմ Հայաստան,
Սիրտդ լալիս է, բայց ժպտում ես դու,
Որ ոչ մի ազգի վիշտդ ցույց չտաս,
Որ ոչ մի այլ ազգ քեզ էլ չխղճա:
Դու միշտ հպարտ ես եղել, իմ հայ ազգ,
Դու միշտ տեսել ես ցավ ու տառապանք,
Բայց դու քո ցավը միշտ լուռ ես տարել
Ու քո շիկացած, դառն արցունքներով
Միշտ քե՛զ դժգոհել:
Այս վիշտն ու ցավն էլ քեզ բաժին ընկավ,
Ճակատագիր է՝ էլի կտանե՛ս,
Բայց հազարավոր ջահել սրտերը,
Դեռ կյանք չմտած, դեռ կյանք չտեսած,
Որ լուռ ու անձայն մեղմիկ հանգեցին,
Ա՜խ, էդ ո՞նց տանես:

ԱՆՆԱ ՀԱԿՈԲՅԱՆ
Երևան, № 47 դպրոց, 10-րդ դաս.

## Հայաստան

Հայաստան կանաչ,
Մայր իմ հարազատ,
Չեմ տեսել վաղուց
Ժպիտը դեմքիդ,
Ծառերդ դալար,
Երկինքդ կապույտ:

Շատ եմ կարոտել կապույտ երկնքիդ:
Իմ հեռու հեռվից ծափ ու ծիծաղի
Ձայներդ կուզեմ լսել ես նորից,
Ծաղկել, մեծանալ և ուրախանալ
Միայն քեզ համար,
Հայաստան կանաչ,
Մայր իմ հարազատ:

ԳԱՅԱՆԵ ԲՈՍՏԱՆՋՅԱՆ
Թբիլիսիի № 4 դպրոց, 4-րդ դաս.

●●●

Երբ շուրջս տեսնում եմ բոլորն ուրախ են,
Ուրախ եմ և ես,
Իսկ երբ տեսնում եմ անսիրտ չար մարդկանց,
Որոնք արարքով բիրտ ու վայրենի
Խլում են անվերջ ժպիտ ու ծիծաղ
Եվ կյանքը լցնում դառը թախիծով՝
Ատելությամբ է իմ սիրտը լցվում:
Այդ մարդուկներին անվանում եմ ես
Լոկ իշանաններ,
Որոնք ընկնելով ճաշիդ մեջ համեղ՝
Հարամում են այն, զզվանք պատճառում,
Փակում ախորժակ...
Ցավով ատում եմ այդպիսի մարդկանց:

## Մայր

Կնճիռներն են քո դեմքին
Ավելանում օրեցօր,
Ու քո սաթե մազերին
Ձյուն է իջնում ամեն օր:

Լուռ թախծում է իմ հոգին,
Մայր իմ, կյանք իմ լուսերես,
Ու չեմ կարող ասել, թե
Որքան շատ եմ սիրում քեզ:

ԲԵՆԻԱՄԻՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Երևան, № 88 դպրոց, 6-րդ դաս.

ՍՊԱՐՏԱԿ ՂԱՐԱԲԱՂՑՅԱՆ

# Սպասման 45 տարի գին

1941 թվական: Հունիսի քսաներկու: Գյուղը մի մարմին ու մի հոգի դարձած հավաքվել է գրասենյակի առաջ ու քարացել: Պատերազմ: Տղամարդիկ ծխել են, կանայք խաչել ձեռքերն ու տխրել:

Հաջորդ օրն արդեն ջահել տղերքը բռնեցին կայարան տանող ճանապարհը, ու գյուղը դատարկվեց, երկա՜ր սպասեց որդուց, եղբորից, ամուսնուց եկող եռանկյունի նամակին: Գյուղն աչք չփակեց ու չքնեց: Ով է տեսել որդին դրսում՝ մայրը հանգիստ անկողին մտնի ու աչք փակի... Աշխարհի գույներից մնացել էր միայն սևը՝ սև օրեր, սև թղթեր, սևազգեստ մայրեր ու հարսներ: Առաջին սև թղթի հետ գյուղը տխրեց ու սև հագավ: Հերիքնազ մայրիկը հազարից մեկ աչք էր փակել ու երազում տեսել, թե իբր իրենց տան երդիկով չորս սև ուրուրներ տուն մտան, ու որքան ուզեցել էր դուրս անել, դուրս քշել ուրուրներին, չէր հաջողվել:

Պատերազմի տարիներին Հերիքնազ մայրիկը ռազմաճակատից չորս սև թուղթ ստացավ: Գյուղի կաղ փոստատարը մըտավ զինկոմիսարիատ ու խնդրեց, աղերսեց, որ իրեն ֆրոնտ ուղարկեն, որ էլ սև թուղթ չբաժանի համագյուղացիներին: «Ուրախ, լավ լուրերի օրերն էլ կգան, գնա, Հանես ամի, մի վշտանա, դու ի՞նչ մեղք ունես»,— համոզել էին նըրան ու ետ ճամփել:

Ուրախ օրերին Հանեսամին չհասավ: Ամեն սև թղթի հետ ինքն էլ կիսվեց, դարձավ քչախոս, ու մի օր էլ գյուղը մընաց առանց կաղ Հանեսի: Մնացած տարեցներից ոչ մեկը չուզեց վերցնել Հանեսի թողած ուսապարկը. բոլորն էլ ռազմաճակատում ջահել-ջիվան տղերք ունեին, ո՞ւմ սիրտը նեղացնես: Գյուղը նոր փոստատար ունենալու համար վիճակ գցեց: Հանեսի թողած ուսապարկը Արմենակ բիձուն ընկավ:

Պինդ տղերքը չծերացան, չհերկեցին, չջրեցին ու չցանեցին պապերի հողը: Հիմա Պառավաքարում ռազմաճակատային նամակները որպես մասունք ու սըրբություն են պահում:

Աշխեն տատը ամուսնուց մնացած եռանկյունի նամակները փաթաթել էր նախշուն գլխաշորի մեջ ու պահում է արդեն քառասուն տարի: Քառասուն տարուց ավելի է, ինչ Աշխեն տատը նախշուն գլխաշորի փոխարեն սև գլխաշորով է ծածկում արդեն ճեփ-ճերմակ մազերը:



Նկարը
ՀՈՎՆԱՆ ՍԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Եվ ամեն անգամ երբ առիթ է լինում
քանդելու ջահել օրերի նախշուն գլխաշոր-
րը, մշուշվում են աչքերը, ու հիշում է, որ
Աշոտը գլխաշորը Թիֆլիսից էր բերել,
երբ դեռ իրենք ջահել էին ու գլխաշորի
վրա մինչև հիմա էլ չխամրող գույների
պես կյանքը անվերջ էր թվում: Երբ
խնդրեցի ամուսնու ռազմաճակատային
նամակները, զգացի, որ Աշխեն տատը
այդ մասունքները ինձ է հանձնում մի
ներքին վախով, ասես բաժանվում է թան-
կագին ու հարազատ մի բանից.

— Կեսը տարան,— ասում է Աշխեն
տատը մեղադրող տոնով:

Տանողները որդիներն են եղել, որոնք
որպես հորից մնացած միակ հիշողու-
թյուն, պահում են իրենց տներում, որ
հայրը միշտ իրենց հետ լինի, որ որբու-
թյուն չզգան...

— Հենց արա բան չպատահի:

— Մի անհանգստանա, Աշխեն տատ,
մի քանի օրից կվերադարձնեմ:

Կարդում էի Աշխեն տատի ամուսնու՝
Աշոտ Միրզոյանի նամակները, ու ինձ
թվում էր, թե այդ օրերին բոլորն էլ գը-
րել ու մտածել են մի ձևով, ինչ ազգու-
թյան էլ պատկանելիս լինեն նամակա-
գիրը: Եվ հենց դրա մեջ չէ՞ր արդյոք
հավատի այն մեծ ուժը, անխորտակ դաշ-
նությունը, որն աշխարհը մաքրեց արա-
տից:

Պարզ, հայ հողագործ մարդու լեզվով
գրված նամակներ են սրանք, ու բոլորն
էլ ավարտվում են «Մեր գործն արդար
է, մենք կհաղթենք» բառերով: Ռազմա-
ճակատային ամեն մի նամակ մի կյանք
է, մի ճակատագիր ու նաև հանձնարա-
րականի պես մի բան ուղղված գալիքին:
Ասում են ուրիշների նամակներ կարդա-
լը անքաղաքավարություն է: Ռազմաճա-
կատային նամակները չեն ենթարկվում
քաղաքավարության այդ կանոններին:
Դա կարող է հաստատել ամեն ոք, ով
երբևէ ձեռքն է առել եռանկյունաձև այդ
մասունքները... Եռանկյունաձև մասունք-
ները մեր հիշողությունն են, ու նրանց
հետ ամեն մի հանդիպում, հանդիպում
է մեր հիշողության հետ: Ահա թե ինչ
է գրում իր նամակներից մեկում Աշոտ
Միրզոյանը:

«... Բարև, Աշխեն ջան: Երանի քո աչ-
քերին, որ ամեն օր տեսնում ես Պառավ
քարն ու մեր հինավուրց գյուղը: Աչք փա-
կելու ժամանակ էլ չկա, որ գոնե երազում
տեսնեմ երեխաներին, քեզ, գյուղը ու գո-
նե այդպես կարոտս առնեմ: Թշնամին
մեր գյուղից շատ է հեռու, բայց երբ նա
այստեղ մի թիզ առաջ է շարժվում, ինձ
թվում է, թե մեր գյուղին է մոտենում...
Հիշո՞ւմ ես մեր գյուղն եկած գաղթական-
ներին. նրանք միշտ աչքիս առաջ են, ու
հիմա իսկական ժամանակն է նրանց
դժբախտության մեղավորներից մեկին
պատժելու...

... Մեր գործն արդար է, մենք կհաղ-
թենք:

Միշտ ձեզ հետ՝ ԱՇՈՏ»:

Մատիտով գրված նամակներն արդեն
խունացել են, ու անընթեռնելի դարձած
տողերը, բառերն անգամ ուզում ես վեր-
ծանել: Նամակներից մի քանիսում հարց
ու փորձ է անում հորեղբոր տղայից.
«...Սարգսից ի՞նչ լուր կա, երկար ժամա-
նակ է ոչ մի տեղեկություն չունեմ: Վեր-
ջին նամակը ստացել եմ հոսպիտալից:
Սարգսի մասին անպայման մի լուր ու-
ղարկեք»:

Աշոտի սև թուղթն ավելի շուտ եկավ:
Այդպես էլ Սարգսից լուր չստացավ: Ու
հիմա, երբ ուզում եմ պատմել նաև
Սարգիս Միրզոյանի մասին, ինձ թվում
է, թե երկար սպասված լուրն եմ ուղար-
կում, ռազմաճակատային մի նամակի
պատասխան, որ գրվում է քառասուն
տարի հետո: Քանի, քանի նամակներ մը-
նացել են այն օրերից, հնարավո՞ր է հաշ-
վել... Թող ուրեմն այդ անպատասխան
նամակների թիվը մեկով պակասի:

«...Սարգիսը հոսպիտալից տուն վերա-
դարձավ մի ոտքը կտրած: Երանի դու
էլ այդպես վերադառնայիր: Մի շեկ ռուս
զինվոր էլ Սարգսի հետ եկավ Պառավ-
քար, անունը՝ Լեոնիդ: Թշնամին մեր
գյուղ չմտավ: Ռուս Լեոնիդի գյուղն ա-
վերվել էր, տեղը մնացել մոխիր: Հաղ-
թանակի լուրը Լեոնիդը մեր գյուղում ա-
ռավ: 1945 թվականի մայիսի ինն էր:
Գյուղը էլի հավաքվեց գրասենյակի ա-
ռաջ: Ուրախությունից ցնծում էր գյուղը:
Սարգիսը պատմում է, թե այդ օրը ու-
րախությունից լեզուն կապ է ընկել: Հա-
րազատի պես գյուղը գրկախառնվեց իր
ռուս Լևաին (արդեն այդպես էին ան-
վանում նրան՝ Լեոնիդին): Այդ գիշեր էլ
գյուղը չքնեց, աչք չփակեց, այս անգամ
արդեն ուրախությունից ու ցնծությունից:
Գյուղը գինովցել էր, քեֆը լավացրել, ու
դրանից ավելի էր պայծառացել հիշողու-
թյունը: Չվերադարձածներին անուն առ
անուն հիշեց: Քո տանն էլ ուրախությու-

նըն ու տխրությունը խառնվել էր իրար, դու քո տանը արդեն եռանկյունի հիշողություն էիր դարձել ու մեծադիր ապակեպատ լուսանկար:

Սարգիսը հարց ու փորձով գտավ ռուս ընկերոջ ծնողներին: Մի օր էլ գյուղը հավաքվեց Սարգսի տուն, քեֆ արեց: Ցանկացավ, որ ամեն մի տնավեր ու բնավեր մարդ գտնի, վերադառնա իր բունը ու հրաժեշտ տվեց իր պահած ու խնամած Լևանին՝ Լեոնիդը հիմա չկա: Բայց նրա որդին՝ Վոլոդյան, մի առանձին սիրով է կապված հոր ռազմաճակատային ընկերոջ ու մեր գյուղի հետ: Ամուսնական ճամփորդությունը Վոլոդյան անցկացրեց մեր գյուղում, առաջնեկի անունն էլ Սարգիս է դրել:

— Ռուս Սարգիս կլինի՞,— կատակով ասում է Սարգսի կինը:

Կատակը կատակ, բայց երբ բարեկամությունը ծնվել ու առնականացել է փորձությունների ճանապարհին, թրծվել խրամատներում ու մահվան արկերի տակ, ռուս Սարգիս էլ կլինի, Վարդան էլ, Անդրանիկ էլ, Աշոտ էլ, Գեղամ էլ...

Սարգիսը Սևաստոպոլի պատվավոր քաղաքացի է: Այնտեղ ամեն ծառ, տուն, փողոց, նրա համար հիշողություն է, կենսագրություն, պատմություն: Անցած տարի որդիների ու թոռների հետ գնաց իր ազատագրած քաղաքը տեսնելու: Չէ, որդիներին ու թոռներին որպես զբոսաշրջիկներ չէր տարել, ինչպես շատերը, այլ տարել էր հիշողության ճանապարհներով քայլել սովորեցնելու...

Գարնանային հրաշք օրը իրիկնանում էր: Պառավ քարի գլխին մայրամուտի արևը ասես հրդեհվող խոտի դեզ լիներ: Հեռվում գյուղը երիզող բարձունքներից մեկի վրա վեր էր խոյանում 179 ջահել ու պինդ պառավքարցիների հիշատակը խորհրդանշող հուշարձանը: Լեռների միջով քաղաք տանող ճանապարհով սլանում էր մեր ավտոմեքենան, ու հիշողության մեջ չէր մարում Աշխեն տատի դողդոջուն ձեռքերով քանդվող նախշուն գլխաշորի կապոցը ու նրա ձայնը.

— Հենց արա բան չպատահի:

Չէ, էլ ոչինչ չի պատահի, Աշխեն տատ, ոչ մի ջահել հարս իր նախշուն գլխաշորում էլ չի պահի ռազմաճակատային եռանկյունի նամակներ ու սև լուր բերած թուղթը, ոչ մի անգամ էլ մեր գյուղում վիճակ գցելով մահվան բոթ բաժանող փոստատար չի կարգվի:

# «ՁԵԶՊԵՍՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ...»

ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Սերոբը ծնվել է Նեմրութ սարի փեշերին գտնվող Մշո Սողորդ գյուղում: Դեռևս պատանեկան տարիներից նա սիրում էր ձի հեծնել, դաշտերը շրջել և որսորդություն անել: Շատ քիչ ժամանակ գյուղի տերտերի մոտ գրաճանաչություն սովորեց ապագա հայդուկապետը: Նրան ձգում էին ազատ բնությունը և հայրենի գեղատեսիլ լեռները: Չարաճճի պատանին իր որսորդությունը սկսում է հարևանների հավերից, նետ-աղեղով և կամ էլ պարսատիկով: Հարևանները նրա արարքների համար բողոքում էին Սերոբի մորը, որը նրան ծեծում էր, իսկ նա զայրացած թողնում էր տուն ու տեղ, անհետանում Ախլաթի սար ու ձորերում և շաբաթներ անց նորից հայտնվում էր գյուղում: Հասակ առնելուց հետո Սերոբը սկսեց հրացան գործածել, թռչուններ և եղնիկներ որսաց և այդպիսի կյանքով ապրեց մինչև 21 տարեկան դառնալը: 1881 թ. Սերոբը ամուսնանում է Սոսեի հետ: 1891 թվականին քրդերի հետ մի կռվի մեջ ընկնելու և նրանցից մեկին սպանելու պատճառով ստիպված թողնում է հայրենի գյուղն ու կնոջը և հայտնըվում Կոստանդնուպոլսում: Ոստիկանության հետապնդումներից ազատվելու նպատակով 1892 թ. հասնում է Ռումինիայի Սուլինա քաղաքը: Շատ չանցած նա Բաթումում էր, ապա՝ Թիֆլիսում, որտեղ ծանոթանում է ազատագրական գաղափարներով տարված երիտասարդների հետ: Զենք գործադրելու գիտակ Սերոբը իր շրջապատի մարդկանց միշտ էլ ասում էր. «Տղաներ, առանց հացի մնացեք, առանց զենքի մի մնաք», նրա նշանաբանն է եղել՝ «զենք և միություն»:

Սկսած 1894 թվականից նա «զինատար» խմբերի հետ մի քանի անգամ գընում է Արևմտյան Հայաստան: 1894—1895 թթ. ձմռանը նա Կովկասում էր, ապա գնում է Ախլաթ, որ և մնում է մինչև իր կյանքի վերջը: Ըստ Սոսեի վկայության՝ թուրքական իշխանությունները

նրան անընդհատ հետապնդում էին ու մի օր էլ քարուքանդ արեցին նրանց տունը, և դրանից հետո հայդուկն իր ընտանիքով ստիպված բարձրացավ Սասունի անառիկ լեռները: Սերոբի խմբի մեջ էր նաև ապագա զորավարը և գեներալը՝ Անդրանիկը: Հայ հայդուկապետ Սերոբի գործունեության հիմնական վայրերն էին հայրենի Ախլաթը և Սասունի զմրուխտյա լեռներն ու կիրճերը: Մի օր քրդական ուժերը տանում են Ծղուկ գյուղի հայ բնակիչների նախիրը: Սերոբը իր խմբով հարձակվում է նրանց վրա և նախիրը ետ խլելով՝ վերադարձնում գյուղացիներին: Սերոբը քրդական ուժերին միշտ էլ հասկացրել է, որ պետք չէ նեղացնել «անմեղ ժողովրդին»՝ անկախ նրա ազգային պատկանելությունից: Իր ազգի համար կյանքը չխնայող Սերոբի մասին երգերից մեկի մեջ ասված է.



ՍԵՐՈԲ ՎԱՐԴԱՆՅԱՆ
(ԱՂԲՅՈՒՐ ՍԵՐՈԲ) (1860—1899)

«Բաղեշ վիլայեթ, անուշ Սալնո-Ձոր,
Սոսեն կը կանչե, հոգի ջան, կյանքդ
ազգին տուր»:

Արևմտյան Հայաստանում և Թուրքիայի հայաբնակ վայրերում 1890-ական թվականներին հայդուկային (ֆիդայական) շարժումը մեծ ծավալ էր ստացել: Հայտնի էին Աղբյուր Սերոբի և բիթլիսցի Ղպեյան Մուշեղի ֆիդայական խմբերը: Թուրքական կառավարությունը ամեն գնով ցանկանում էր շարքից հանել դրանք: 1897 թ. փետրվարի 27-ին թուրքական կառավարությանը հայտնի է դառնում, որ Աղբյուր Սերոբն իր խմբով գտնվում է կամ Թեղուտ և կամ էլ Սոխորդ գյուղերում: Թուրքական մի ջոկատ սկզբից պաշարում է Թեղուտը, որի բնակիչներին ստիպում են հանձնել Սերոբին, հակառակ դեպքում սպառնում են «այրել և քանդել ամբողջ գյուղը»: Սակայն Աղբյուրն իր խմբով գտնվում էր Սոխորդում: Մի երիտասարդ թեղուտցու հաջողվում է գնալ հարևան Սոխորդ, գտնել քնած Սերոբին և ասել. «Արթընցի՛ր, սիրելի եղբայր իմ, արթնցի՛ր, զենքերդ վրադ առ, թշնամիներդ քեզ բռնելու եկան»: Սերոբի խումբը դուրս է գալիս այդ տնից: Սկսվում է դաժան կռիվը, որը տևում է արշալույսից մինչև ցերեկվա ժամը 2-ը: Սերոբը կռվից հետո հագնում է լաքաները (ձյան վրայից ազատ քայլելու դահուկանման կոշիկներ) և բարձրանում է Նեմրութ լեռը: Խստացած բուք ու բորանի պատճառով շատերը կարծում էին, թե հայդուկը խեղդված կլինի, սակայն նա երկու շաբաթից հետո վերադառնում է Ախլաթ:

1898 թ. հոկտեմբերին Աղբյուրը իր խմբով գտնվում էր Բաղեշից ոչ շատ հեռու գտնվող Բաբշեն գյուղում և հանկարծակի պաշարվում է թուրքական ուժերի կողմից: Հայդուկները կռվով բարձրանում են մոտակա բլուրը և անվրեպ կրակով շարքից հանում տասնյակների և, ընդամենը մեկ զոհ տալով, պատռում են թըշնամու շղթան ու հեռանում: Այս կռվում թուրքական ուժերը նրա խմբի դեմ էին հանել մի թնդանոթ, որի թնդանոթաձիգին միայն 12 արկ է հաջողվում արձակել, որից հետո նա ընկնում է հայդուկների մոսին հրացանների գնդակներից: Այս կռվից հետո Սերոբը ժողովրդի կողմից ստացավ փաշա տիտղոսը:

Թուրքական պաշտոնյաները սկսեցին իրենց զինված ուժերով ավելի ու ավելի հետապնդել Սերոբի խմբին: Նրանց հաջողվեց թունավորել նրան: Եվ իմանալով, որ Սերոբը հիվանդ է ու գտնվում է Սասունի Գելիեգուզան գյուղում, 500 հոգուց բաղկացած մի ջոկատ լուսաբացին հարձակվեց այդ գյուղի վրա: Հիվանդ հայդուկը իր ընկերների և ընտանիքի անդամների հետ բարձրանում է գյուղի մոտ գտնվող լեռը: Սկսվում է արյունալի կռիվը, որի ժամանակ սպանվում են Սերոբը, հայդուկային պայքարին որդեգըր-

ված նրա եղբայրները՝ Միսոն և Զաքարը, պատանի որդին՝ Հակոբը: Միսոյի կնոջը՝ Տատոյին հաջողվում է կռվի օղակից հանել Սերոբի երկու տարեկան Սասիկ անունով որդուն: Այս կռվում սպանվում է Սասունի լեռնաշխարհում իր քաջություններով հայտնի դարձած և ժողովրդին սիրելի Տեր-Քաջը: Վիրավորվում է Սոսեն, սակայն հրացանը ձեռքին կռվում է թուրքական և քրդական ուժերի դեմ: Քաջորդի այս կին հայդուկի արարքը այսպես դրվատվեց կռվից հետո հորինված ժողովրդական մի երգի մեջ.

«Զայնս քեզ վկա, Սերոբ ջան, հոս եմ,
Զինված պատրաստված ձայնիդ
կսպասեմ,
Քեզի հետ կռվելու, քու կողքիդ
մեռնելու,
Ամեն օր, ամեն ժամ պատրաստ է
Սոսեն...»:

Կռվից հետո քրդական զինված ուժերի պետ Բրղարե Խալիլը կտրում է հերոսի գլուխը և վերցնելով նրա վիրավոր կնոջը, իջնում է Մուշ: Հայերի մեջ սարսափ առաջացնելու նպատակով՝ Սերոբի գլուխը մի ցցի վրա ամրացնելով, սկսում են պտտեցնել Մուշի փողոցներում, ապա տանում Բիթլիս (Բաղեշ):

Դեպքերի ականատես, Բաղեշի այն ժամանակվա հոգևոր առաջնորդ Եղիշե Չիլինկարյանը գրում է, որ հերոսի գլուխը պտտեցրել են նաև Բաղեշի փողոցներում: Այնուհետև «այս տխուր թափորը եկավ և լցվեցավ կառավարության ընդարձակ հրապարակը, նույն միջոցին պատրաստ գտնվող զինվորական նըվագածու խումբը բոլորակ մը ձևացուց, և Սերոբին գլուխը բարձր բռնած ձիավոր սպան շրջանակի մեջ առավ և սկսավ տխուր եղանակներ զարնել»: Այս արարողությունից հետո գլուխը ուղարկվում է Բաղեշի առաջնորդանիստ Կարմրակնյա եկեղեցին և թաղվում է այդ եկեղեցու բակում: Այսպիսով՝ Տարոն-Ախլաթի հայդուկապետը երկու գերեզման ունեցավ, նրա մարմինը հողին հանձնվեց Սասունի Գելիեգուզան գյուղում, իսկ գլուխը՝ Բիթլիսում:

Հայդուկային շարժման ամենաականավոր գործիչներից մեկի՝ Սերոբի մահը հուզեց ողջ ժողովրդին, և նրա մասին հորինվեցին շատ երգեր հայերեն և քրդերեն լեզուներով: Քրդերեն երգերից մեկի մեջ ասված է, որ քրդերը հարձակվեցին նրա խմբի վրա տալով երկու զոհ: Սերոբը ջոկատի հրամանատարին զգուշացնում է թողնել և հեռանալ, քանի որ իր տղաները անվրեպ կրակողներ են և նրանց զենքերին զոհ կգնան շատերը: Սերոբի վեհանձն այս արարքը հետագայում դարձավ երգի նյութ:

Ինչպես Սերոբի, այնպես էլ նրա երկու ընկերների՝ Առաքելի և Մուշեղի մասին «Ավերակ ջաղաց» երգում ժողովուրդը գովերգեց Սերոբի արիությունը և հայդուկների քաջագործությունը:

«Առաքել, Մուշեղ լեռներեն իջան,
Ավերակ ջաղաց, հոգի ջան, գտան
օթևան,
Լեռներ ու ձորեր եղան բոլոր մարդ,
Ավերակ ջաղաց, հոգի ջան, օգնեց
մեզի շատ:
Զմրուխտ սարը բռնել էր կարկուտ,
Սերոբ կը կանչե, հոգի ջան, դուշմանն է
անգութ:
Դե, զարկե՛ք, զարկե՛ք, դե կռվեք
քաջ-քաջ.
Տիրոջ սուրբ կամքով, հոգի ջան, մենք
երթանք առաջ»:

Դեռևս երիտասարդական տարիներին Ավ. Իսահակյանը «Հայ գուսան» ստորագրությամբ հրատարակել է բանաստեղծությունների մի շարք՝ նվիրված հայկական լեռնաշխարհում գործող հայդուկներին: Բանաստեղծություններից մեկը նվիրված է Սերոբին՝

«Նեմրութա սարը հազար ակն ունի՝
Հազար էլ Մըշու դաշտն ի վայր կերթա,
Մենակ Սերոբի արբյուրը սրտի
Խեղճ ժողովրդի սրտի մեջ կերթա—
Ազատ օրերի, դալար օրերի
Ծարավ ժողովրդի սրտի մեջ կերթա»:

Հայդուկները Սերոբի սպանությունից հետո որոշեցին վրեժ լուծել Բշարե Խալիլից: Նրանք մի օր Անդրանիկի գլխավորությամբ կտրեցին այն կիրճի բերանը, որտեղից պետք է անցներ Խալիլը: Հայդուկների անվրեպ կրակից մի քանի րոպեի ընթացքում շարքից դուրս է գալիս նրա ջոկատի անդամների մեծ մասը: Խալիլը կենդանի ընկնում է հայդուկների ձեռքը: Կազմվում է դատական ատյան, որի ժամանակ իրար հետևից ասվում են այն չարագործությունները, որը Խալիլը կատարել էր անմեղ ժողովրդի նկատմամբ, որից հետո ֆիդայիները կտրում են նրա գլուխը, ամրացնում մի ցցի վրա և պտտեցնում Սասունի գյուղերից մեկում:



ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

«Հայաստանի կենդանական աշխարհը» անտիպ հատորից

# Ի՞նչ են պատմում պեղածո ոսկորները

Խոսքս միայն այն թռչունների ոսկորների մասին է, որ գտնվել են Դվինի և Արգիշտիխինիլիի (հետագա Արմավիրի) պեղումների ժամանակ։ Առայժմ որոշակի են հետևյալ թռչունների մնացորդները. Դվինից՝ 7—12-րդ դարեր. լորի և քարակաքավի՝ 110 ոսկոր, գորշ կաքավի՝ 26 կտոր։ Այդտեղ գտնվել են նաև կարապի, կռնչան բադի, սագի, կռունկի, տիգաբադի, սուլող մրտիմների ոսկորներ, Արգիշտիխինիլիում՝ (6-րդ դար մ. թ. ա.) ջրագռավի, արոսի, գորշ սագի, խայտաբադի, ցցունազարդ կապույտ բադի և այլն։

Ես հիշատակեցի միայն այն թռչուններին, որոնց մասին խոսք ունեմ ասելու։ Այլապես ասածս վայրերից ուրիշ այլ թռչունների մնացորդներ ևս գտել են (ագռավի, արքայարծվի և այլն)։

Փորձենք այս չոր ցուցակի և չոր թվերի տակ տեսնել այն ժամանակվա թռչնային աշխարհը և բնական պայմանները հայոց աշխարհի երկու մայրաքաղաքների շուրջը։

Թե՛ Դվինի, թե՛ Արգիշտիխինիլիի ավերակները գտնվում են չոր տափաստանների կենտրոնում, ջրերից ու ճահիճներից բավական հեռու։ Հապա այդ ինչ-

պե՞ս, որտե՞ղ էր մեր թվականությունից առաջ 7-րդ դարի նաև հետագա դարերում Արմավիրում ապրող հայը որսում այնպիսի թռչուններ, որոնց բնական միջավայրը ջուրն է ու ճահիճը: Նույնը պիտի ասել Դվինի բնակիչների մասին:

Բայց չէ՞ որ բարայծն ու եղջերուն, որոնց մնացորդները գտնվել են, նույնպես հեռու էին Արգիշտիխինիլիից, այդ ինչպե՞ս է, որ նրանց որսով զբաղվել են այդ քաղաքի մարդիկ — կհարցնի ընթերցողը: Արքաները, պալատականները, բարձր խավը իրենց մարտակառքերով նույնիսկ առյուծների և վայրի ցուլերի դեմ էին գնում, և դրա ապացույցը Էրեբունիում գտնված բրոնզե գոտիների ու թիթեղների վրա արված դրվագանկարներն են: Բայց այն հեռավոր ժամանակներում, երբ չկար հրացան, ով պիտի անհագին ճանապարհ կտրեր հասներ Արաքսի ափերը, որ ճահճային թռչունների որս կատարեր: Եվ ինչո՞վ: Նետո՞վ, նիզակո՞վ, թե՞ գեղարդով... Ձեռնտու չէր: Ավելի հավանականն այն է, որ ասածս ջրային թռչունները իրենք են մոտ եղել այդ մայրաքաղաքներին: Դրանում կհամոզվենք, եթե Արմավիրից ուղղվենք մինչև Արաքսի ափը և ուշադիր նայենք մեր ոտքի տակի հողին: Ես շատ անգամ եմ անցել այդ տարածությունը թե՛ որսորդության ժամանակ, թե՛ այն տարիներին, երբ աշխատում էի Արմավիրում: Եվ նկատել եմ, որ սկսած Սարդարապատի ճակատամարտի հուշարձաններն իր մեջ կրող բլրից և նրա շարունակությունը կազմող բլրաշարքից, որ վերջանում է Արմավիրի երբեմնի միջնաբերդով,— լեռնամատի նման ձգվող այդ բարձունքների ստորոտից մինչև Արաքս, համատարած կոպիճներ են, գլաքարեր, ողորկ գետաքարեր, որոնք լուռ վկաներն են այն բանի, որ մի ժամանակ Արաքսը հոսել է այդ վայրերով:

Այժմ էլ, եթե քայլենք Արաքսի ափով, կնկատենք, որ նրա աջ ափը շատ տեղ բարձրադիր է և ջրերը շեղվում են դեպի աջ, ծեծում են աջափնյա զառիթափերի ստորոտները, փլցնում, քանդում և իրենց հետ տանում են հողը, առափնյա ծառերն ու թփերը: Ուրեմն, այսօր էլ Արաքսը շարունակ ձգտում է դեպի աջ և տեղ-տեղ արդեն հաջողացրել է իր հունը փոխել, նախկին հունը թողնելով իր ձախ կողմում: Քանի որ ուղիղ կես դար է, որ ես հետևում եմ այդ պրոցեսին (սկսած 1925 թվականից, երբ աշխատում էի Արմավիրում), ես հնարավորություն ունեմ տեսնելու մեր մեծ գետի այդ «աշխատանքը» և նրա մասնակի արդյունքները: Իսկ քանի 50 տարի է անցել այն օրից, երբ Արգիշտի 1-ինը հիմնեց իր բերդաքաղաքը: Այնպես որ, թող զարմանալի չթվա այսօրվա մարդուն, եթե Մովսես Խորենացուց իմանա, որ մի ժամանակ Հայկի թոռ Արամայիսը Արմավիր քաղաքը հիմնել է Երասխի ափին: Իսկ երբ ժամանակի ընթացքում Արաքսը փոխեց իր հունը և հեռացավ Արմավիրից, հայոց մայրաքաղաքը զրկվեց պաշտպանությունից (Արաքսը պաշտպանում էր քաղաքը նրա ամբողջ արևմտյան երկարությամբ): Այդ պատճառով էլ Երվանդ Դ թագավորը գնաց ավելի ապահով տեղ, հիմնեց Երվանդաշատը (Ախուրյանի ժայռապատ ափին) և այնտեղ փոխադրեց արքունիքը, իր հետ տարավ ու Բագարանում կանգնեցրեց Արմավիրի հռչակավոր մեհյանի կուռքերը:

Հիմա հասկանալի՞ է, թե որտեղ կարող էին բնակվել, կեր որոնել կամ իրենց չուի ճանապարհին իջնել ջրային այն թռչունները, որոնք զոհ են գնացել Արգիշտիխինիլիի և Արմավիրի բնակիչների որոգայթներին կամ որսորդական այլ հնարանքներին, և որոնց մնացորդները գտել է հնագետ Հ. Մարտիրոսյանը: Գետը իր «սովորության» համաձայն և ճյուղեր է տվել, և ճահիճներ առաջացրել, և ստեղծել ջրային թռչունների համար բնական միջավայր ու կենսապայմաններ, բաներ, որ շատ դարեր է արդեն, որ չկան ներկա Արմավիրին մերձակա վայրերում:

Հեղհեղուկ ու անկայուն Արաքսը՝ իր Մեծամոր կոչվող ջրառատ վտակի հետ միասին նույն խաղը խաղացել է նաև մեր մյուս մայրաքաղաքի՝ Արտաշատի գլխին: Այստեղ ևս դեպի աջ քոչելով հեռացել է քաղաքից և նրան թողել անպաշտպան: Այդ առթիվ «Բնաշխարհիկ բառարանի» 1-ին հատորում (Վենետիկ, 1902, էջ 322) հրապարակվել է ֆրանսիացի գիտնական Դյուբուայի ճամփորդական տպավորություններից մի հատված, որ մեջ ենք բերում գրաբարից թարգմանաբար.

«Վազեցի դեպի ավերակները և աչքերս հագեցան նրանց ընդարձակությամբ, քանի որ իր մեծությամբ և կործանմամբ սրա նմանը տեսած չէին: Հայոց այս հին մայրաքաղաքը Մեծամորի Երասխ մտնելու բերանումն էր: Այժմ Երասխը չտեսնե-




Սաշա... Ալեքսանդր... Ալեքսանդր Գավրիլովիչ...

Այս անունները պատկանում են Մոսկվայի Լենինյան կոմերիտմիության անվան թատրոնի դերասան Աբդուլովին: Առաջին երկուսը սովորական են ու բնական, քանի որ խոսքը երիտասարդ մարդու մասին է (նա ընդամենը 35 տարեկան է), սրընթաց ու հաջող արտիստական ճակատագրով (խաղում է թատրոնի ներկայացումների մեծ մասում, նկարահանվել է 40-ից ավելի ֆիլմերում):

Սակայն Աբդուլովին հաճախ չէ, որ դիմում են անուն-հայրանունով, թեև արդեն ծանրաբարո մարդ է, ՌՍՖՍՀ վաստակավոր արտիստ, ունի ընտանիք՝ կին, 14-ամյա աղջիկ: Աբդուլովն ինքը չի պնդում, որ իրեն դիմեն «Ալեքսանդր Գավրիլովիչ» ձևով, ինչպես երևում է, հասկանալով, որ իր անվան ու հայրանվան համատեղումը շրջապատի մարդկանց շրթունքներին ինչ-որ հատուկ մեծարանք է վերջնականապես ձևավորված անհատականության նկատմամբ: Աբդուլովն իրեն առայժմ վերջնականապես ձևավորված անհատականություն չի համարում: Մոտիկից ծանոթանալով նրան, նկարահանումների փորձերի ժամանակ և կենցաղում, տեսնում ես, թե ինչպիսի ջանասիրությամբ է կյանքում նա փնտրում ինքն իրեն, երբեմն մի ծայրահեղությունից մյուսի գիրկն ընկնելով, խանդավառվելով ու հիասթափվելով: Նույնիսկ նրա հոբին մշտապես փոփոխվում է. մեկ ըսպորտ, մեկ նկարչություն, փոխվում է մինչև իսկ արտաքին տեսքը. մեկ մորուք է թողնում, մեկ՝ բեղեր... Շատերն այս երկարաձգվող երիտասարդությանը վերաբերվում են գորովանքով, մի քանիսին էլ դա ջղայնացնում է: Այնինչ՝ տեղի է ունենում բնականոն, այդ իսկ պատճառով տանջալից որոնում սեփական գույնի բարձրագույն նշանակությամբ, Արտիստ դառնալու ընթացք: Մեծ կարողությունների տեր է Աբդուլովը, քանի որ բնությունը շռայլորեն նրան օժտել է հրաշալի արտաքինով, ձայնով, երաժշտականությամբ, գեղակերտ շարժումով, հումորի ու թախծի նուրբ զգացողությամբ, և անհրաժեշտ է զգույշ լինել՝ այդ ամենը մանրուքների վրա չսպառելու համար:

Սաշա Աբդուլովն սկսեց լավ, Ալեքսանդրը շատ արագ ճանաչման հասավ, Ալեքսանդր Գավրիլովիչը առաջին զգույշ քայլերն է կատարում: Իսկ ժամանակն է ուրիշի հայելու մեջ դիտել սեփական անձը կամ, ինչպես դերասանի հայրն է ա-

սում «Շատ կարևոր է ընթացող տրամվայից մեկ անգամ ցատկել ու նայել՝ արդյո՞ք անհրաժեշտ համարն ես նստել: Եթե ոչ՝ փնտրիր նոր երթուղի, եթե այո՝ կրկին հասիր նախորդի ետևից: Բայց շարժվել բախտի քմահաճույքին տրված և ուրախանալ, թե արագ ես ընթանում, անթույլատրելի է»: Հայրը ռեժիսոր էր և ամենից առաջ մեծ հարգանք էր պահանջում թատրոնի նկատմամբ: «Դեռ շատ հեռվից, թատրոն չհասած, հայրս հանում էր գլխարկը,— պատմում է Սաշան:— Մեզնից էլ՝ իր երիտասարդներից նույնն էր պահանջում...Փորձերը ամենօրյա դասեր էին, ներկայացումը՝ սուրբ արարողություն, եթե նույնիսկ այն տեղի էր ունենում ինչ-որ կիսաքանդ ակումբի կիսազարդ դահլիճում... Ուղին դեպի արտիստական կոչում, հորս կարծիքով, պետք է անցնի «թատերական» մի շարք մասնագիտությունների միջով. մենք պետք է յուրացնենք ռեկվեզիտորի, բեմի բանվորի, լուսավորողի, դիմահարդարի մասնագիտությունները: Իսկ այդ ընթացքում նա անչափ խիստ էր ու պահանջկոտ: Մի անգամ, երբ ես բեմի բանվոր էի աշխատում, և իմ անփութության պատճառով տապալվեց ներկայացումը, բոլոր վնասները հայրս ստիպեց հատուցել իմ սեփական խնայողությունից:



Հետո սկսվեց պատանի Սաշայի սրընթաց վերափոխությունը սիրված Ալեքսանդրի: Դերեր միշտ էլ ստանում էր, Աբդուլովի համար հնարավորություններ էին ստեղծվում ցուցադրելու իր ողջ արտիստական հմտություններն ու կարողությունները. երգում էր, պարում, սուսերամարտում, կատարում տրյուկներ: Աշխատանքը համատեղում էր հեռուստատեսության և էստրադայի հետ: Զուգահեռները, ինչպես ժամանակակից երկրաչափությունն է վկայում, հատվում են: Թատերական աշխատանքների մեջ աստիճանաբար սկսում էր թափանցել էստրադան, կինոդերերի մեջ՝ ավելորդ թատերայնությունը: Աշխատանքը միշտ էլ դերասանի օգտին է: Արտիստը սա քաջ գիտակցում է:




Ահա մի քանի հարցեր, որոնց պատասխանել է Աբդուլովը:

— Դու բավարարվա՞ծ ես արտիստի քո այսօրվա դրությամբ:

— Ոչ այնքան:

— Ի՞նչն է, որ քեզ չի բավարարում թատրոնում:

— Երազում եմ գլխավոր դեր ստանալ: Արդեն տասը տարի է, ինչ գլխավոր դեր չեմ ունեցել:

— Դու նկարահանվել ես քառասուն ֆիլմում: Դրանցից քանիսո՞ւմ իզուր:

— Կարծում եմ՝ կեսում:

— Դու հաճա՞խ ես էստրադային գործունեությամբ զբաղվում, գնում հանդի-

# Լուսանկարների հայտածման վաննա

Լուսանկարների հայտածման ընթացքում ֆոտոթղթերը ֆոտոխոշորացույցով լույս տալուց հետո հերթով պետք է մըշակվեն համապատասխան լուծույթով լցված վաննաներում: Ֆոտոթղթերի փոխադրումը մեկ վաննայից մյուսը կատարվում է ֆոտոբռնիչի օգնությամբ, ուզում ենք հիշեցնել, որ միաժամանակյա մշակման ենթարկելով շատ քիչ թվով ֆոտոթուղթ: Մեր կողմից առաջարկված սարքը ունի մի շարք առավելություններ և դրա հետ մեկտեղ հնարավորություն է տալիս շատացնել միաժամանակ հայտածվող ֆոտոթղթերի քանակը, հեշտացնել դրանք մի վաննայից մյուսը տեղափոխելը:

Նշված միջուկը նախատեսված է 10—15 սմ չափսի ֆոտոթղթերի հայտածման համար: Այլ չափի ֆոտոթղթեր հայտածելու համար պետք է փոխել միջուկի չափերը: Միջուկը պատրաստվում է ցանկացած թթվակայուն նյութից (վինիպլաստից, օրգանական ապակուց և այլն): 1— գծերի վրա (նայիր նկ. 1—4) արված են ф—1,0 մմ տրամագծով անցքեր իրարից 5 մմ հեռավորության վրա: Ֆոտոթղթերը միմյանցից անջատող միջնապատերը գործված են Ф—0,3 մմ ձկան թելից:

Լուծույթի մեջ գտնված ժամանակ հընարավոր է, որ ֆոտոնկարները միջուկից դուրս մղվեն, քանի որ լուծույթի որոշ բաղադրիչներ ունեն ավելի մեծ տեսակարար կշիռ: Այդ իսկ պատճառով միջուկի հանդիպակաց 2 պատերից տարված են ռետինե լարեր, որոնք ֆոտոթղթերը հայտածման ողջ ընթացքում պահում են միջուկում: Այս սարքի հաջորդ առավելությունն այն է, որ ազատ հնարավորություն է տալիս հայտածողին ձեռքերով չհպվել լուծույթներին, որոնք ինչպես գիտենք, բացասաբար են անդրադառնում մաշկի առողջական վիճակի վրա: Գիտենք նաև, որ ձեռքի հետ շըփվելիս լուծույթի որոշ բաղադրիչներ ժամանակից շուտ շարքից դուրս են գալիս: Հետևաբար սարքը հնարավորություն է տալիս ավելացնելու լուծույթների գործածության ժամկետը:

Աշխատանքը սկսվում է հետևյալ կերպ. ֆոտոթղթերը հերթով դրվում են միջուկի պատերի մեջ, սկսած միջուկի մի եզրից, սկզբում մեկ հատ, իսկ հաջորդները՝ 2-ական (էմուլսիայի շերտերը դեպի պատերը) մինչև միջուկի մյուս եզրը, որտեղ նորից դրվում է մեկ հատ: Այնու-




1, 2, 3 շրջանակներում գտնվում են նապաստակները, իսկ 10, 11, 12 շրջանակներում՝ գայլերը: Հարկավոր է նապաստակները տեղափոխել 10, 11, 12 շրջանակները, իսկ գայլերը նրանց տեղը, այն պայմանով, որ երկու նապաստակ կամ երկու գայլ «չհանդիպեն» մեկ ուղիղ գծով միացած շրջանակներում: Յուրաքանչյուր շրջանակում պետք է լինի մեկ նապաստակ կամ մեկ գայլ:

Առաջարկը՝ ՎԱՀԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ












հետև լիցքավորված միջուկը դրվում է լուծույթներով լցված (ըստ հերթականության) վաննաների մեջ և միացվում է ժամանակը: Հայտածման ողջ ընթացքում պետք է մի քանի անգամ շարժել միջուկը վաննայի մեջ:

Սիրելի երեխաներ, հուսով ենք, որ մեր կողմից առաջարկված սարքը կհեշտացնի ձեր աշխատանքը:

**ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՄԵՆԴԵԼՅԱՆ**
ՊՏԿԿ կինո-ֆոտո լաբորատորիայի խմբակային աշխատանքի ղեկավար

# ԺՊԻՏՆԵՐ

— Քեզ դուր եկա՞վ պիեսի երկրորդ գործողությունը:

—Ես այն չտեսա: Ծրագրում գրված էր «Երկրորդ գործողություն, երկու տարի անց», իսկ ես չէի կարող այդքան սպասել:

Մի տաքարյուն գործարար մարդ հարավից գրում է հետևյալ նամակը.
«Սըր, քանի որ իմ աղագրողը կին է, չի կարող մեքենագրել այն, ինչ ես մտածում եմ ձեր մասին: Ես, լինելով ջենտլմեն, չեմ կարող մտածել դրա մասին: Դուք չլինելով ոչ մեկր, ոչ մյուսը, պետք է հասկանաք այն, ինչը ես նկատի ունեմ:

ՈՒՍՈՒՑԻՉ.— Թոմի, քո ձեռքերը շատ կեղտոտ են: Ինչ կասեիր դու, եթե ես դպրոց գայի կեղտոտ ձեռքերով:

ԹՈՄԻ.— Ես այնքան քաղաքավարի կլինեի, որ չէի նկատի:

Մարկ Տվենը նայեց իր դիմացի տան պատուհաններին, որտեղ վերջերս նոր բնակիչներ էին հայտնվել, որոնց նա չէր ճանաչում: Հանկարծ նա ինչ-որ բան նըկատեց և վազելով անցավ փողոցի մյուս կողմը: Հուզված մոտեցավ նստած մարդկանց և բացականչեց. «Իմ անունը Տվեն է: Իմ կինը և ես մեծ ցանկություն ունեինք այցելել ձեզ և մեր խորին հարգանքն արտահայտել, բայց մենք չկարողացանք այդ անել: Ես ներողություն եմ խնդրում, որ առանց հրավերի ներս մտա, բայց ուզում եմ ասել, որ ձեր տունը հըրդեհ է ընկել»:



Լուսանկարը՝ ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՆՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՑՈԼՅԱՆ Լ., ՇԻԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՎԱՐԴԱՆՅԱՆ Ա.։

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 7780